

ՃԱՆԱՉԵԼ ԶԻՄԱՍՏՈՒԹԻՒՆ ԵՒ ԶԽՐԱՏ ԻՄԱՆԱԼ ԶԲԱՆՍ ՀԱՆՃԱՐՈՅ

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը
Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ
Հ Ձ Ղ Ճ Մ Յ
Ն Շ Ո Չ Պ
Ջ Ռ Ս
Վ Տ Ր
Ց Ւ Փ Ք

# ՊԻՈՆԵՐ

№ 6 ՀՈՒՆԻՍ 1962



digitised by A.R.A.R.@




ՔԱՆԻ՛ ՑԵՂԵՐ ՑԱՄԱՔԵՑԻՆ, ԻՆՉՊԵՍ ՀԵՂԵՂՆ ԱՎԱԶԻ ՄԵՋ,
ԲԱՅՑ ԼԵՆԻՆՅԱՆ ԾՈՎԻՆ ՀԱՍԱՎ ՄԵՍՐՈՊԱՏԱՌ ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒՆ։

Նաիրի Զարյան

# ՄԵՍՐՈՊ

## ՆՎԻՐԱԿԱ՛Ն ՎԱՅՐ, ՆՎԻՐԱԿԱ՛Ն ԱՆՈՒ՛Ն

Երևանից 33 կիլոմետր դեպի արևմուտք, արարատյան բարեբեր այգիների մեջ փռված է հայկական հինավուրց Օշական գյուղը։ Կա՞ արդյոք մի հայ, որ չիմանա, թե ինչով է նշանավոր այդ փոքրիկ գյուղը։ Կա՞ արդյոք մի հայ, որի սրտին հարազատ ու սիրելի չլինի այդ վայրը։

Այստե՛ղ, Օշականում է գտնվում հայ ժողովրդի ամենամեծ հանճարի՝ Մեսրոպ Մաշտոցի գերեզմանը։ Ավելի քան տասնհինգ դար որքա՜ն սիրտ է հուզվել, որքա՜ն արցունք է թափվել Մեսրոպ Մաշտոցի սուրբ շիրմի վրա։ Կա արցունք ուրախության ու ցնծության, կա արցունք վշտի ու դառնության։ Թե՛ ուրախության և՛ թե՛ վշտի պահերին հայ մարդը սրբազան պարտականություն է համարել այցի գնալ ազգային գրի ու գրականության հիմնադիրի շիրմին։

Բազում արքաների ու մեծատունների շքեղ դամբարանները, որոնցով այնքա՜ն հարուստ էր մեր երկիրը, վաղուց հավասարվել են հողին ու անհետացել, բարձրացել ու պատվանդանից ցած են գլորվել աշխարհահռչակ տիրակալների հուշարձանները, իսկ Մեսրոպ Մաշտոցի գերեզմանը գալիս է դարերի խորքից, կա ու կմնա հավետ։ Շա՜տ փոթորիկներ են անցել Հայաստանի վրայով, բայց ժողովուրդը իր մայրենի լեզվի հետ միասին սրբությամբ պահել ու պահպանել է իր մեծ զավակի գերեզմանը և հանձնել սերունդներին, որպես ազգի գոյության խորհրդանշան։

## ՀՐԱՇԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՅՐ-ԲԱՆԱԼԻ

Գիրը մարդկային մտքի ամենամեծ հրաշագործությունն է։ Չլիներ գիրը, չէր ստեղծվի ժողովուրդների պատմությունը, չէին լինի իմաստուն գրքերը.

digitised by A.R.A.R.@

Государственная
БИБЛИОТЕКА
СССР
имени
В. И. ЛЕНИНА
1962 г.

19861

ՀՈՒՆԻՍ
№ 6 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
34-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՄԱՇՏՈՑ

և սերունդները չէին կարողանա ծանոթանալ իրենց նախնիների կյանքին ու կուլտուրական հուշարձաններին: Չլիներ գիրը, չէր զարգանա գիտությունն ու տեխնիկան, չէին լինի այսօրվա հրաշագործ մեքենաներն ու էլեկտրականությունը, ռադիոն ու հեռուստացույցը, գործարաններն ու հրթիռները, մարդը հնարավորություն չէր ունենա հասկանալ բնության գաղտնիքները: Երբ գիտնականն ու կոնստրուկտորը մի հայտնագործություն են ուզում կատարել, ստեղծել թեկուզ ամենապարզ մեքենան, առանց գրի չեն կարող իրականացնել իրենց ծրագիրը: Գիրը մարդու համար դարձել է այնքան սովորական ու կենսական անհրաժեշտություն, ինչպես արևի լույսն է, առանց որի չի կարելի պատկերացնել կյանքը:

Մարդկությունը նախնական պատկերագրերից ժամանակակից հնչյունագրերին հասել է տասնյակ հազարավոր տարիների համառ աշխատանքի ու պայքարի շնորհիվ:

Հայերը այն հնագույն ժողովուրդներից են, որոնք մարդկության արշալույսին հասկացան գրի վիթխարի նշանակությունը:

Դե, ուրեմն, պատանի ընթերցող, եկ միասին դարերի վրայով տեղափոխվենք այն օրերը, երբ մեր մեծ հայրենակից Մեսրոպ Մաշտոցը իր հանճարի ուժով ստեղծեց հայկական գրերը և հիմք դրեց սեփական դպրության:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՅՆ ՕՐԵՐԻՆ

Տիգրան Մեծի ստեղծած Հայոց հզոր ու լայնածավալ կայսրությունը վաղուց անկում էր ապրել: Հայաստանը դարձել էր Սասանյան Պարսկաստանի ու Բյուզանդիայի կռվախնձորը: Այդ երկու հարևան պետությունները երրորդ դարի վերջերից սկսած բոլոր միջոցները գործադրում էին հայ ժողովրդին ստրկացնելու համար: Հայոց Արշակունիների արքունիքը Տրդատ Երրորդից մինչև Պապ թագավորը ջանք ու եռանդ չէր խնայում ստեղծելու կենտրոնացված հզոր պետություն: Սակայն երկարատև պատերազմներից թուլացած երկիրը այլևս ի վիճակի չէր դիմադրելու այդ խոշոր պետություններին: 387 թվականին Հայոց աշխարհը կորցրեց իր քաղաքական անկախությունը և բաժանվեց երկու մասի: Արևմտյան նահանգներում սկսեց տիրություն անել Բյուզանդիան, իսկ արևելյանում՝ Պարսկաստանը: Բացի այդ, առանձին գավառներ նրանք ամբողջովին անջատեցին և միացրին իրենց հողերին:

Ծանր օրեր էր ապրում հայ ժողովուրդը: Օտարերկրյա նվաճողները դաժան հարկեր էին դնում բնակչության վրա: Հինգերորդ դարի պատմիչ Եղիշեն այդ օրերի մասին արցունքով գրել է. «Ո՞վ կարող է պատմել, թե ինչպիսի ծանր տուրքեր ու սակեր, բաժեր ու հասեր էին նշանակում մեր լեռների, դաշտերի և անտառների վրա: Վերցնում էին ոչ ինչպես վայել է պետական արժանավորությանը, այլ ավազակաբար հափշտակելով այն աստիճան, որ իրենք ևս մեծապես զարմանում էին, թե ինչպե՞ս է չեն մնում այն երկիրը, որից այսքան գանձ է դուրս գալիս»:

Բայց նվաճողները չէին բավարարվում դրանով: Նրանք ուզում էին հայ ժողովրդին ձուլել իրենց և վերջնականապես տիրանալ նրա երկրին: Այդ նպատակին հասնելու գլխավոր և հիմնական միջոցը հայոց լեզուն վերացնելն էր: Եվ նրանք հարձակվեցին մեր լեզվի վրա: Հայ մանուկներին սովորեցնում էին հունարեն և ասորերեն, պետական պաշտոնական գրագրությունը կատարվում էր դարձյալ այդ լեզուներով: Դրությունը կործանարար էր: Փրկության միակ միջոցը սեփական գիր և գրականություն ստեղծելն էր: Միայն հայ գիրն ու գրականությունը կկարողանար իրար կապել երկու մասի բաժանված հայությունը, բարձրացնել նրա քաղաքական ինքնագիտակցությունն ու հայրենասիրությունը և պայմաններ ստեղծել կորցրած անկախությունը վերականգնելու համար:

Եվ ահա մեր ազգի լուսավորության ու փրկու-

966-Ա2

digitised by A.R.A.R.@

թյան հայրենասիրական մեծ շարժման կազմակերպիչն ու ղեկավարը հանդիսացավ հասարակ գյուղացու զավակ Մեսրոպ Մաշտոցը։

## ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑԸ ԵՎ ՀԱՅ ԳՐԵՐԻ ԳՅՈՒՏԸ



Գրեթե բոլոր կարևոր հայտնագործությունները ունեն իրենց հեղինակները։ Մենք գիտենք նրանց անունները, նրանց ծննդյան ու մահվան մոտավոր կամ ստույգ թվականները։ Սակայն գրերի գյուտը մի այնպիսի խոշոր նվաճում է մարդկության զարգացման ճանապարհին, որ այն հաճախ համարվել է մարդկային ուժերից վեր ստեղծագործություն և վերագրվել է աստվածներին։ Օրինակ՝ եգիպտական, բաբելոնական, չինական և այլ ժողովուրդների ավանդությունների համաձայն՝ նրանց գրերը ստեղծել են աստվածները։

Բայց հայոց այբուբենը չի ստեղծվել գերբնական ուժով. հայ գրերի արարիչը Մեսրոպ Մաշտոցն է։ Նա ծնվել է 360-362 թվականների միջև, պատմական Հայաստանի Տարոնի գավառի Հացիկ գյուղում։ Տեսնելով որդու ընդունակությունները, գյուղացի Վարդանը նրան տալիս է տեղի դպրոցը, որտեղ ուսուցումը կատարվում էր հունարեն։ Կրթության անհագ ծարավը այնուհետև պատանի Մեսրոպին տանում է Ասորիքի Անտիոք քաղաքը, որտեղ նա ծանոթանում է ժամանակի բանասիրությանը, հմտանում հունարեն և ասորերեն լեզուների գիտության մեջ, տիրապետում է բնական գիտությունների հիմունքներին, դառնալով ժամանակի ամենազարգացած երիտասարդներից մեկը։ Նրա համբավը հասնում է մինչև արքունիք, և հայոց թագավոր Խոսրով Չորրորդը նրան ծառայության է վերցնում իր մոտ որպես դպիրի, տալով նաև զինվորական կոչում։ Թեև Մեսրոպը մեծ սեր ու հարգանք էր վայելում արքունիքում, բայց մի քանի տարի հետո թողնում է ծառայությունը և դառնում վանական։ Դա այն տարիներին էր, երբ մահացու հարված էր հասցված հայ պետականությանը։

Շատ երիտասարդներ, լսելով Մեսրոպ իմաստունի հռչակը, հավաքվում են նրա շուրջը և աշակերտում նրան։ Բայց մեծ գործերի համար ծնված Մեսրոպը երկար ժամանակ վանքում մնալ չէր կարող։ Նա գնում է ժողովրդի մեջ, ոտքով հասնելով մինչև Գողթն գավառը (այժմ՝ Նախիջևանի հարավ-արևելյան մասը)։ Այստեղ դեռ պահպանվում էին ազգային ավանդությունները ու հին հեթանոսական պաշտամունքը։ Իշխան Շամբիթի օգնությամբ նա վերջ է դնում հեթանոսական կրոնի պաշտամունքին, ապա գնում Սյունյաց աշխարհը (Զանգեզուր)։

Այդ շրջագայությունների ժամանակ Մեսրոպը տեսնում է, որ ամենուրեք ասպարեզից հանված է



digitised by A.R.A.R.@

հայոց լեզուն, և հույն ու ասորի կրոնավորները ձգտում են խեղդել ազգային ոգին հայերի մեջ։ Նրա խորաթափանց միտքը հասկանում է, որ եթե այդպես շարունակվի, կամաց-կամաց կվերանա հայ ժողովուրդը։ Մեսրոպ Մաշտոցը որոշում է հայերեն լեզվի նշանագրեր ստեղծելու գործը վերցնել իր վրա։ Լավագույն աշակերտներից կազմում է մի խումբ, շրջագայում Հայաստանի գավառները, ուսումնասիրում հայ լեզվի բարբառները, ապա մեկնում արտասահմանյան առաջավոր քաղաքները։ Ամիդ և Եդեսիա քաղաքների գրադարաններում նա մանրազնին հետազոտություններ է կատարում, ուսումնասիրում ժամանակի այբուբենները և համեմատում իրար հետ, ստուգում դրանց համապատասխանությունը հայոց լեզվի առանձնահատկություններին։ Նա վերջնականապես համոզվում է, որ եղած գրերից ոչ մեկը հարմար չէ իր մայրենի լեզվին, որի 36 հնչույթի դեմ մյուս լեզուներն ունեին հազիվ 24—26 տառ։ Պետք էր ստեղծել բոլորովին նոր, ինքնուրույն այբուբեն։

Ստեղծագործական երկար որոնումները պսակվում են հաջողությամբ։ Մեսրոպ Մաշտոցը ստեղծում է հայոց լեզվի 36 տառերը, որոնք արդեն 15 դարից ավելի է, ինչ անփոփոխ ծառայում են մեզ։ Միայն՝ միջին դարերում մեսրոպյան այբուբենում ավելացան լատինական օ և ֆ տառերը։ 406 թվականին իր աշակերտների հետ միասին Մեսրոպ Մաշտոցը վերադառնում է Հայրենիք։ Ամենուրեք նրան դիմավորում են ցնծությամբ։ Իսկ թագավորանիստ Վաղարշապատի մատույցներում նրան մեծ շուքով ընդառա՛ջ են գնում թագավորը (Արևելյան Հայաստանում դեռ պահպանվում էր հայկական թագավորությունը), կաթողիկոսը, նախարարները, զորականները, հոգևորականները և քաղաքի ամբողջ բնակչությունը։ Մի քանի օր շարունակ ժողովուրդը ցնծությամբ տոնում է գրերի գյուտը։

## ՄԵՐ ԱՌԱՋԻ՛Ն ՈՒՍՈՒՑԻՉԸ ԵՎ ԴՊՐՈՒԹՅԱ՛Ն ՆԱՀԱՊԵՏԸ

Գրերի գյուտով սկսվում է գրագիտության տարածման և թարգմանություններ կատարելու մի բուռն շրջան։ Մեսրոպ Մաշտոցը անխոնջ կերպով լծվում է ազգի լուսավորության մեծ գործին։ Նա շրջում է ժողովրդի մեջ, բորբոքում ազգային ինքնուրույնության ու միասնության ոգին, բաց անում դպրոցներ, իր աշակերտներին ուսուցիչ նշանակում և մի գավառից անցնում մյուսը։

Արևելյան Հայաստանում գործը կարգավորելուց հետո, Մեսրոպ Մաշտոցը մտահոգվում է արևմտյա՛ն մասում բնակվող հայրենակիցների վիճակով, որտեղ հույները արդեն վերացրել էին հայկական թագավորությունը։ Թեոդոս կայսրից մեծ դժվարությամբ թույլտվություն ստանալուց հետո, նա այստեղ էլ սկսում է դպրոցներ հիմնել, լուսավորություն տարածել մայրենի լեզվով և բորբոքել հայրենասիրության ոգին։



Այդ ժամանակ հայ գրերի գյուտի և Մեսրոպ Մաշտոցի համբավը հասնում է հարևան ժողովուրդներին. եվ ահա Մաշտոցը մեկնում է Վրաստան, Աղվանից աշխարհը և օգնում նրանց՝ սեփական այբուբեն ստեղծելու գործում։ Մինչև խոր ծերություն, մեր առաջին ուսուցիչը, լուսավորություն ու կրթություն տարածելով՝ շրջում էր ամենուրեք։

Հայ գրերի գյուտով սկիզբ է դրվում հայ ազգային մատենագրությանը, որը կարճ ժամանակում հասնում է չտեսնված բարգավաճման։ Հայ



digitised by A.R.A.R.@

մատենագիրները զգալով իրենց գործի մեծությունն ու նշանակությունը ապագա սերունդների համար՝ գրի են առնում մեր ժողովրդի պատմությունը, ավանդությունններն ու երգերը, թարգմանում ժամանակի նշանավոր գործերը, որոնցից շատերն այժմ բնագրի ուժ ունեն։ Մեսրոպ Մաշտոցը, Սահակ Պարթևը, նրանց ավագ ու կրտսեր աշակերտներ Եզնիկը, Կորյունը, Եղիշեն, Խորենացին և մյուսները թողել են այնպիսի ստեղծագործություններ, որոնցով բազմաթիվ սերունդներ են դաստիարակվել։ Մեսրոպատառ այդ անդրանիկ աշխատությունները այն ոսկե սյուներն են, որոնց վրա կանգնած են մեր ազգային գրականությունը, կուլտուրան, արվեստը։

Մեսրոպ Մաշտոցը մեռավ 440 թվականի փետրվարի 17-ին, մոտ 80 տարեկան հասակում։ Հայ ժողովուրդը մեծ սուգ ապրեց և նրան արժանացրեց այն ժամանակվա երկրային ամենաբարձր պատվին՝ դասեց սրբերի կարգը։ Ոմանք առաջարկում էին նրան թաղել իր ծննդավայրում, ոմանք՝ Գողթն գավառում, ոմանք էլ՝ Վաղարշապատում (այժմ էջմիածին)։ Բայց հաղթող դուրս եկավ Հայոց աշխարհի հազարապետ Վահան Ամատունին, որը Մեսրոպ Մաշտոցի մարմինը շքեղ հանդիսավորությամբ տարավ իր սեփական Օշական գյուղը, հանձնեց հողին և վրան մի եկեղեցի կառուցեց։

## ԴԱՐԵՐԻ ԽՈՐՔԻՑ՝ ԴԵՊԻ ԴԱՐԵՐԸ

Հայ գրերի գյուտից շատ չանցած, Արևելյան Հայաստանը ևս զրկվեց իր պետականությունից և վերածվեց պարսկական մարզպանության։ Սակայն Մեսրոպ Մաշտոցի շնորհիվ հայ ժողովուրդը ձեռք էր բերել մի այնպիսի հզոր ուժ, որը Արարատի նման միշտ կանգուն է մնացել ամեն տեսակի փոթորիկների հանդիման։ Արյունարբու Հազկերտը քրմեր ու փղեր ուղարկեց, որ խեղդի մեր լեզուն, Շենգ Պերոզը պատիվ էր տալիս մայրենի լեզուն ուրացողներին, սելջուկ-թաթարները խարույկի վրա այրում էին մեր մագաղաթյա թանկագին ձեռագրերը, որ անարմատ ծառի պես չորանա հայկյան դարավոր խոսքը, թուրք ենիչերիները կտրում էին մեր պապերի լեզուն, որ հայերեն չխոսեն և ազգուրաց դառնան, ցարական ժանդարմները փակում էին մայրենի դպրոցները, որ հայ մանուկն այլևս չթոթովի՝ «Այբ, Բեն, Գիմ, Դա»...

Բայց իզուր. մեսրոպատառ հայոց լեզուն միշտ վառ պահեց ազգային ոգին։ Երբ հայրենի օջախներից Միջագետքի ավազուտներն ու Տեր-Զորի անապատներն արտաքսվեցին մեր միլիոնավոր հայրենակիցները և դարձան թուրք յաթաղանի զոհ, հայ մայրերը չմարող հավատով գետնի վրա և ձեռքի ափի մեջ էին մանուկներին սովորեցնում հայոց այբուբենը։ Քաղցից ուժասպառ ու պապակ շուրթերով նրանք պատմում էին նաև մեր քաջ նախնիների մասին, որոնք զոհվում, բայց չէին դավաճանում մայրենի լեզվին։

Դաժան ու արյունոտ ճանապարհ է անցել մեր ժողովուրդը։ Բայց, որպես պայծառ ջահ, միշտ վառ է պահել մեսրոպյան հայերենը, որ չմոլորվեր պատմության քարքարոտ ճանապարհներին։ Լավ է ասելականավոր բանաստեղծ Նաիրի Զարյանը.




Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Քանի՜ ցեղեր ցամաքեցին, ինչպես հեղեղն ավազի մեջ,*
*Բայց լենինյան ծովին հասավ մեսրոպատառ հայոց լեզուն։*

Լենինյան գաղափարները փրկություն բերին հայ



digitised by A.R.A.R.@

ժողովրդին և ընդմիշտ որոշեցին նրա ապագան։ Եթե Մեսրոպ Մաշտոցի ժամանակ տասնյակներից չէին անցնում եկեղեցիների նեղլիկ ու մութ խուցերում տեղավորված դպրոցները, ապա Սովետական Հայաստանում այժմ գործում է մոտ 1500 հանրակրթական, բաներիտ ու գյուղերիտ դպրոց՝ 312 հազար սովորողներով։ Իսկ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական դպրոցների ուսանողների թիվը անցնում է 33 հազարից։ Սովետական կարգերի հաստատման նախօրյակին Հայաստանում կար ընդամենը 166 դպրոց՝ 18 հազար 600 սովորողներով։ Այն ժամանակվա 1230-ի փոխարեն այժմ ունենք 21 հազար ուսուցիչ։ Իսկ Հայաստանի Գիտությունների ակադեմիայում և բարձրագույն ուսումնական հաստատություններում աշխատում են 4 հազարից ավելի գիտական աշխատողներ, որոնցից 158-ը գիտությունների դոկտորներ են։ Եթե Մաշտոցի ժամանակ գրիչները ամիսներ ու տարիներ շարունակ անքուն գիշերներ էին անցկացնում ճեթի ճրագի տակ, որ կարողանան տաժանակիր աշխատանքով սերունդներին թողնել գոնե մեկ գիրք, ապա Հայպետհրատը 1961 թվականին լույս է ընծայել 458 անուն գիրք, ավելի քան երեք միլիոն ընդհանուր տպաքանակով։ 1920 թվականին Հայաստանում լույս է տեսել 3 անուն դասագիրք, իսկ այժմ ամեն տարի հանրապետական Ուսմանկհրատը հրատարակում է 100 անուն դասագիրք, ավելի քան երկու միլիոն ընդհանուր տպաքանակով։

Մի՞թե հնարավոր է թվել այն բոլոր նվաճումները, որ մեր ժողովուրդը ձեռք է բերել լենինյան արևի տակ։

Պատանի ընթերցող, դարերի խորքից եկել ու քեզ է հասել քո մայրենի լեզուն։ Սիրի՛ր ու պահպանի՛ր, մաքրի՛ր պահիր ու հարստացրու՛ հայերենը, ինչպես արել են մեր նախնիները։ Իսկ դու գիտե՞ս, թե վերջին քառասուն տարում փոխառություններով ու նորաստեղծ բառերով որքան է հարստացել մեր լեզուն։ Պատանի ընթերցող, մի՛ մոռանա նաև, որ մայրենի լեզուն իմանալը դեռ բոլորը չէ. հայ լեզվի ամենաջերմ պաշտպան Մեսրոպ Մաշտոցից մինչև այսօրվա մեր գիտնականները, գրողներն ու մյուս գործիչները առնվազն մի քանի լեզու են իմացել։ Սովորիր ռուս մեծ ժողովրդի լեզուն, սովորիր նաև օտար լեզուներ, բայց մի՛ մոռացիր քո մայրենին։ Այդպես են վարվել մեր նախնիները, այդպես է սովորեցնում մեր լենինյան կուսակցությունը, այդպես է ավանդել հանճարեղ Մեսրոպ Մաշտոցը, որի ծննդյան 1600-ամյակը մեծ երախտագիտությամբ նշվեց ոչ միայն նրա հայրենիքում, այլև բոլոր կուլտուրական ժողովուրդների կողմից։

ՎԱՐԴԳԵՎ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ՀԱՎԵՐԺՈՒԹՅԱՆ ճանապարհորդը



ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

Ահա միջով այս տառերի
Եվ իմ սրտով, Մեսրոպ Մաշտոց,
Նայում ես դու խոհով լրին
Գալիքներին արևազօծ։
Դու՝ դարերի վսեմ ղողանջ,
Հազարամյա ջահելություն,
Ամեն դարում կռվի ելած
Ու չպարտված զինվոր արթուն։
Արևածագ հայոց մտքի՝
Պայծառացած ամեն դարում,
Շունչ կենարար դու սխրանքի,
Մեր դպրության քայլող գարուն։
Անցած ու նոր օրերի խինդ,
Օ՜, հայրություն, վեհ, անխռով,
Ոսոխներին մեր չարասիրտ
Դու հաղթեցիր լեզվի սրով։
Ո՜վ քերթության մեծ արարիչ,
Քո օրերում մռայլ ու գորշ,
Հայոց հոգու բաղձանքը ջինջ
Դու դարձրիր լույսի դրոշ։
Դու վառվեցիր մտքիդ հրով,
Դարիդ ասիր՝ քեզ բարի երթ,
Աշխարհ եկար ամեն նորով,
Բայց չմեռար մեռնողի հետ։
Սանդուղք դարձար դու երկնամերձ,
Վերև տարար հնչյուն ու բառ,
Դու պահեցիր աստղերի մեջ
Մեր պատմության աստղերը վառ։
Դու տքնեցիր մթին վանքում,
Լույս դարձրիր խոհերդ հորդ
Եվ այրվելով՝ դարձար կյանքում
Հավերժության ճանապարհորդ։

# ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ ԳԻՇԵՐՎԱ ԵՐԱԶԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՂՈՒԿԱՍՅԱՆ

(Պատմական զրույց)

180 թվականն էր, հայոց հավելյացի[1] վերջին՝ հինգերորդ օրը:

Վաղը Նավասարդն էր՝ գարնանամուտը՝ հայոց Նոր տարին:

Կապույտ, զով երեկոն հեզահոս ծանրանում էր Աշտիշատի վրա:

Ավանը գտնվում էր Արածանու աջ ափին: Ջրնհալից հորդած և վերջալույսից շառագունած ալիքների ուրախ շառաչը խառնվում էր գետափին արածող սպիտակ արջառների բառաչին, որոնք վաղը պիտի զոհաբերվեին հայոց աստվածներին:

Մեծ եռուզեռ էր տիրում Վահեվանյան, Անահիտի և Վահագնի մեհյանների առջև, որտեղ բուրմերի հոծ բազմության էին խառնվել երկրի հեռավոր ծայրերից Նավասարդը տոնելու եկած նախարարական տոհմերն ու ռամիկ ժողովուրդը:

Երբեք այդպիսի բազմություն չէր եղել Աշտիշատում: Ավանը լի էր ոչ միայն հայերով, այլև Հելլադայից, Պոնտոսից և Պարթևաստանից եկած հյուրերով: Այդ գուցե և նրանից էր, որ Արտաշես արքան խլել էր ավագությունը պարսից արշակունի արքայից և ոսկեդրամ կտրել իր պատկերով: Հյուրընկալ տներն ու հյուրանոցները լցված էին վաղվա օլիմպիական խաղերին ու մրցումներին մասնակցելու եկած ըմբիշներով, ճարտար նետաձիգներով, գուսաններով և դյուցազներգակներով, որոնք իրենց հմտությունը պիտի ցույց տային արքայից-արքա Արտաշեսի առջև:

[1] Հին հայկական ամիսները 30 օր ունեին, և մնացած 5 օրը կոչվում էր յավելյաց, այսինքն՝ ավելացրած:

* * *

Նավասարդյան այդ երջանիկ երեկոյան պալատի մոտ գտնվող արքայական դիվանատան պահապան, դիվանագիր Դատը ծանոթանում էր իր հյուրերի հետ:

Անապաստան այդ օտարականներին տուն էր բերել Դատի որդի Վարաժը, և որովհետև տանը արդեն ասեղ գցելու տեղ չկար, բարեսիրտ Դատը հարմար էր գտել նրանց տեղ տալ արքայական դիվանատանը: Հյուրերը Գողթն գավառից էին՝ հայր ու որդի:

Նրանք բոլորել էին բարձ սեղանը և տարեմուտի քաղցր փոխինդի ծանրամարս գնդիկների հետ կում-կում խմում էին թթվաշ գարեջուրը: Բոցավառվող մարխի նարնջագույն ճառագայթները ցատկոտում էին բարաշեն դիվանատան սառն կամարների տակ՝ կարմիր ներկերով պարթևական ու ասորական այլատառ հիշատակարաններն ու վիպասանությունները, որոնք խնամքով շարված էին պատերի երկայնքով: Այնտեղ կային և մագաղաթյա մատյաններ հունարեն, եբրայերեն ու արամեական տառերով:

Պատանիները լուռ ակնածանքով լսում էին ծնողների խոսակցությունը: Գողթնցի տղան նիհար էր, սևաչ ու սլացիկ հասակով, իսկ Վարաժը՝ տարոնցին, լայնաթիկունք էր, ոսկեծամ ու կապուտաչ: Նա հայացքը չէր կտրում իր հասակակից հյուրից, որ նստել էր բամբիռը գրկած և հոգնությունից փակվող աչքերով նայում էր իր շուրջը: Նրա կիսապարեգոտը կարկատած էր, աչքերը՝ բորբոքված և մինչև բաց ծնկները հասնող տրեխակապերը՝ բազմաթիվ հանգույցներով լի:

— Թող Նանե դիցուհին[2] օրհնի մեր ծուխծխանը, — ասաց վերջապես հյուրը, — թե դուք չլինեիք, տեր իմ, բացօթյա պիտի գիշերեինք: Շատ էինք հոգնել:

— Ե՞րբ եք տնից ելել, — հարցրեց Դատը:

— Հրոտից[3] նոր էր սկսվել, տեր իմ:

— Ցու՞րտ էին ճամփաները:

— Ցուրտ. Աշմունիք և Մարդաղի գավառները ձնածածկ են. Սրմանց ու Մեղեթուխ լեռները մշուշում էին: Բայց, ասում են, տաք է Արարատի ափին՝ Արմավիրում: Ասում են, Արմենակ նահապետի Սոսյաց դիցանվեր անտառները անօրինակ ծաղկել են այս տարի և լավ գուշակություններ շշնջացել:

— Մեզ մոտ էլ տաք է, — ասաց Դատը:

— Մեզ մոտ էլ տաք կլինի, տեր իմ: Հիմի ծաղկած կլինի և մեր Այգուլիցը:

— Ասում են, առատ երկիր է:

— Անունից հայտնի է, տեր իմ. այգիներով է լցված մեր հողը: Ոչ մի տեղ չեք գտնի մեր պտուղներն ու գինին: Մեր Գողթնը անման է, տեր իմ:

— Եվ երգիչները, — ժպտաց Դատը: — Դուք, երևի, շինակա՞ն եք:

— Ես երգահան եմ, տեր իմ, — և հյուրը ժպտալով շոյեց իր բամբիռի մարմինը:

2. Տնային տնտեսության աստվածուհին:

3. Համընկնում է այժմյան փետրվարին:

digitised by A.R.A.R.@

— Երգահա՞ն, — բացականչեց Դատոն, — իսկ որդի՞դ։

— Իմ հորինածներն է երգում, տեր իմ։

— Ինչպե՞ս է անունը։

— Տիրիթ, — աչքերը հազիվ բաց անելով, շշնջաց պատանին՝ կրծքին սեղմած բամբիռը։

— Արամազդը վկա, որ մեր բախտը բերել է, — բացականչեց Դատոն։ — Ուրեմն դուք եկել եք մրցումներին մասնակցելո՞ւ։

— Ճիշտ այդպես, տեր իմ։ Մենք հուսով ենք, որ պիտի երգենք Արտաշես արքայի առաջ։

— Իսկ ի՞նչ պիտի երգեք։

— Ե՛վ թվելյաց, և՛ վիպասանաց, և՛ առասպելյաց[1] Տիրիթս, տեր իմ, լավ գիտե Վրույր հագներգուի[2] տաղերը, բայց Արտաշես արքայից-արքայի համար նա պիտի երգե իմ նոր հորինածը։

— Երգեք, Աստղիկ դիցուհու[3] սիրույն, երգեցեք այդ երգը։ Թող ուրախ անցնի Նավասարդի երեկոն, — խնդրեց Դատոն։

Փավոս Գողթնցին ժպտալով նայեց որդու կիսախուփ աչքերի մեջ։ Տիրիթը զգաստացավ, լարեց բամբիռը, և սառն դիվանատունը լցվեց գարնանային ջերմությամբ։

Դա Հայաստան երկրին նվիրված մի սքանչելի երգ էր, որտեղ գովերգվում էին մեր լեռները, ծովերը, բերրի դաշտերն ու այգիները։ Դա հայոց աշխարհի արիության ու անմահության ձոնված մի վիպասանություն էր, որ Նավասարդյան շնչով փառաբանվում էին հայոց պանծալի աստվածներն ու արիարանց արքայից-արքա Մեծն Արտաշեսը։

Փավոս Գողթնցին հետևում էր որդու երգին և ղեկավարում բառերի շեշտն ու տևողությունը, մեղմությունն ու ուժգնությունը, դանդաղությունն ու արագությունը։

— Երկա՜ր, — բացականչում էր նա, երբ բառը վերաբերվում էր հայոց կապույտ ու անհուն երկնքին, ծովերին ու դաշտերին։

— Սո՜ւղ, — երբ հարկավոր էր արագացնել երգի տեմպը։

— Բո՜թ, — երբ պետք էր շունչ առնել։

— Շե՛շտ, — երբ պիտի շեշտվեին հայոց աստվածների անունները ու ժողովրդի արիությունը։

— Պարույկ, — երբ հարցմունք էր արվում գուշակող Սոսյաց անտառներին Նոր տարու՝ Նավասարդի և հայոց պայծառ ապագայի մասին։

— Քաջարվեստ էր, — բացականչեց ոգևորված Դատոն, երբ Տիրիթը, կրծքին սեղմելով բամբիռը, նստեց։

Փավոս Գողթնցին, գոհունակությամբ շոյելով, խոնարհեց գլուխը, իսկ Վարաժը, որ հուզվել էր Տիրիթի գեղեցիկ ձայնից, իր կապույտ, ոսկեփայլ աչքերը չէր կտրում նրանից։

— Հիանալի երգեց, — ասաց Դատոն, — որդիդ մեծ երգիչ կդառնա. արքան անպայման կհավանի նրան։

— Այս երգը նոր է, — պատասխանեց Փավոսը, — և ես վախենում եմ, որ Տիրիթը շփոթվի արքայի առջև։ Նա ավելի ուժեղ է մանր ռամունքի մեջ, ուր կցորդն ու մեղեդիքը ճշտապահ են։

— Որո՞նք են կցորդն ու մեղեդիքը, — վերջապես խոսակցությանը խառնվեց Վարաժը։

— Թամկական տաղերի նվագները, — պատասխանեց Փավոսը, — իսկ այն, ինչ քիչ առաջ երգեց, դա քաջարվեստ է, բարդ եղանակ, որ առանց խաղերի բանիմացության չի երգվի։

— Խաղե՞րը, — կրկնեց Վարաժը. — որո՞նք են խաղերը։



1. Հայ գուսանական երգերը ըստ բովանդակության եղել են երեք տեսակ՝ բանաստեղծություն, պատմություն և ավանդություն:

2. Երգիչ:

3. Գեղեցկության և սիրո աստվածուհին:



digitised by A.R.A.R.@

— Երաժշտական տառերը, — պատասխանեց Փավոսը. — Ալբիանոս մեծ քրմապետը մոտ 800 խազ գիտի, իսկ իմ իմացածը 500-ից ավելի չէ: Մեր խազերը նույնն են, ինչ հնուց նոտաները, միայն թե նրանցը գրվում են տափակ, քառակուսի և կլոր ձևերով: Մերն ավելի դյուրին է: Սակայն ես զբաղված եմ, սեր իմ:

— Ինչո՞ւ, — զարմացավ Դատը:

— Խազեր ունենք, բայց տառեր՝ ոչ... Մեր հորինած երգերը պետք կորչեն մի օր, սեր իմ, եթե տառեր չունենանք:

Եվ նա խոր հառաչեց:

Տխրեց և Տիրիթը.

— Իրավունք ունենք տխրելու, — ծանր լռությունը խզեց Դատը: — Եվ մեհենական, և արքայական մեր այս դիվանատունը լի են տարբեր, պարթևական և հնուց ձեռագրերով, սակայն հայոցը չկա...

— Եվ ով պետք գտնի հայոցը... — հառաչեց Փավոս Գողթնեցին:

— Մենք հայոց տառերը, վարպետ, — հաստատեց Դատը, — կգտնենք, մի օր կգտնենք:

— Անշուշտ կգտնենք, — կրկնեց Վարազը ոգևորված, — հայոց միտքը կտրուկ է, հայոց սրի պես:

Տիրիթը ժպտաց, և Նավասարդյան երեկոն ջերմացավ:

— Լավ պատանի է, — Վարազին խորքից նայելով ասաց Փավոսը. — Վահագնային է, լայնալանջ: Երևի դիվանագրությո՞ւն է սովորում, — դարձավ նա Դատին:

— Ոչ, ռազմական արվեստ, — պատասխանեց Դատը, հպարտ նայելով իր որդու վրա. — Վարազն արքայորդի Տիրանի ռազմուսույցն է: Ճարտար նետաձգության, վազքի, ըմբշամարտի և սուսերի մեջ է նրա շնորհը:

— Թող աստվածները հարյուրապատկեն նրա շնորհքը, — ասաց Փավոսը, — վաղը երևի մրցումներին պետք մասնակցի:

— Անպայման, — ժպտաց Դատը. — ինչպես Տիրիթը՝ երգի: Հուսանք, որ մեզ անմխիթար չեն թողնի:

Պատանիները հարազատ եղբայրների պես նայեցին իրար և քաղցր ժպտացին:

Տեսնելով հյուրերի ազնիվ հանդերձանքը, և հատկապես պատանի երգչի քրքրված տրեխները, Վարազը ափսոսում էր, որ իր կիսամաշ տրեխները ու հագուստները, ըստ նավասարդյան սովորության, տանը գտնվող մյուս հնոտիների հետ այրել էին դեռ երեք օր առաջ, չորեքշաբթի օրը, նախքան կցատկեին արքայական և մաքրարար կրակի վրայից: «Մի՞թե սքանչելի երգող այս պատանին այսպիսի ցնցոտիներով պետք կանգնի արքայից-արքայի առջև»,— հառաչում էր սրտի խորքում Վարազը:

* * *

Եվ Նավասարդյան երգով ջերմացած արքայական դիվանատան կամարների տակ Տիրիթն այդ գիշեր մի սքանչելի երազ տեսավ:

Տեսավ նա, որպես թե, երգում է արքայից-արքա Արտաշեսի առջև, և իրեն լսում է ողջ ժողովուրդը հայոց՝ պարթևաց սահմանից մինչև սահմանները Հյուսիսայի, Մարաց լեռներից մինչև Պոնտոսի ափերն ալեկոծ:

Նավասարդ է նորից, ծաղկել են դիցանկեր անտառները Մասյաց, բոցում են լուսակն ու համաստեղը, և ցնծալի երգը թռչում է զեփյուռի թևով:

«Բայց այս երգը կկորչի, — մտածում է նա. — ինչու է ցնծում ժողովուրդը հայոց, երբ տառեր չունի, և այս երգը պետք կորչի...»

Բայց ահա բամբիռների հնչյունով հղփացող քաղցրալուր նվագի միջից լսվում է ծավալվող ժողովրդի շշունջը. «Գալիս է, գալիս է»: Ու տեսնում է Տիրիթը, որ ժողովուրդը ճամփա է տալիս մեկին, որ այնքան նման է մեծ քրմապետ Ալբիանոս երաժշտին: Ոչ, նա Արամազդի վեհությունն ունի, երկնագույն աստղային պատմուճան, և Վահագնի պես հուր մազեր ունի, և՛ բոց մորուք, և՛ աչքերը



digitised by A.R.A.R.@

արեգակներ են... Քայլում է լուսեղեն մարդը դեպի Տիրիթը, և՛ մագաղաթ ունի ձեռքին, և՛ գրեր մագաղաթի վրա: «Մի՛ տխրիր, Տիրիթ,— ասում է նա,— ես գտա տառերը հայոց. սա քո հոր երգն է, որ էլ չի կորչի»: Եվ փողերը հնչում են, ու թմբուկները ցնծում պարթևաց սահմանից մինչև սահմանները Հելլադայի, Մարաց լեռներից մինչև Պոնտոսի ափերն ափեկոծ:

...Արթնացավ Տիրիթն ու ժպտաց. նրան թվաց, որ երազը շարունակվում է, դրսից լսվում էր փողերի, թմբուկների և բամբիռների տոնական ձայնը: Այդ ժողովուրդն էր, որ ծովացել էր արքայից-արքայի պալատի առջև:

Առավոտ էր, Նավասարդյան ոսկեփայլ առավոտ:

* * *

Հենց գլխավոր փողոցում, երբ երևաց արքայից-արքային տանող պատգարակը, խուռն ամբոխի մեջ Տիրիթը կորցրեց հորը: Սակայն նա հույսը չկտրեց: Նա գիտեր, որ նրան կարող էր հանդիպել երեք մեհյաններից մեկնումեկում, ուր իր հերթական զոհերը պիտի մատուցաներ արքայից-արքան:

Գեղեցիկ էր հայոց արքային տանող ոսկեձույլ պատգարակը, գեղեցիկ էին բեհեզյա թիկնաբարձերը, որոնց վրա կռթնել էր նա, և՛ ականակուռ ոսկե թագը, և՛ ոսկյա զենքերը, և՛ ոսկեթել ծիրանի վերարկուն, սակայն ավելի գեղեցիկ էր ինքը՝ Մեծն Արտաշեսը:

Սպիտակ նժույգներով նրան հետևում էին պատանի արքայորդի Տիրանը և ազգականները: Ապա գալիս էին նախարարները, անվանի տոհմերի ավագ նահապետներն ու զինավառ զորագնդերը: Արքայական շքախմբերից հետո գալիս էին օտար աշխարհներից եկած մեծանուն հյուրերը, մրրիչներ, երգիչներ, բանաստեղծներ, և ապա երաժիշտներին կրնկակոխ՝ տոնական զարդարված ժողովուրդը:

Տիրիթը շշմել էր այդ անօրինակ շքեղությունից, շեփորների, թմբուկների և բամբիռների բարձր ձայնից: Թեև գարնան առաջին օրն էր, սակայն Աշտիշատը ամբողջովին կանաչի մեջ էր: Տների պատշգամբներն ու տոնական կամարները զարդարված էին դաշտային, ջերմոցային ծաղկեպսակներով և Սոսյաց անտառներից կտրված նորաբողբոջ ճյուղերով: Այդպիսի ճյուղեր կային համարյա բոլորի ձեռքերում, որ թափահարում էին գլխից վեր, երբ ամբոխի միջից երկարամորուք քուրմերը դեսպակների վրա տանում էին հայոց ութ աստվածների արձանները:

Սակայն այդ համաժողովրդական երթի մեջ ամենահուզիչը զոհաբերման տարվող սպիտակ արջառներն էին, որ քառաչում էին աղեկեզ: Նրանց ճակատները ներկված էին կարմիր տորոնով և վզերից վարդապսակներ էին կախված:

Ինչքան էլ Տիրիթը նայում էր աջ ու ձախ, Վահեվահյան մեհյանում նա չգտավ իր հորը: Սակայն նա շատ մոտիկից տեսավ արքայից-արքային, որ Վահագնի ոսկեձույլ արձանի սուր նշտարով կտրեց զոհաբերվող արջառի աջ ականջի ծայրը: Քաջության աստված Վահագնի արձանի կողքին նա տեսավ և հունական Վահագնի՝ Հերկուլեսի պղնձաձույլ արձանը, որ բերել էր Մեծն Արտաշեսը հելլադական արշավանքից:

Հորը նա չգտավ նաև հայոց թագի պաշտպանուհի Ոսկեծին ու Ոսկեմայր Անահիտ աստվածուհու մեհյանում, սակայն շատ մոտիկից տեսավ այն կիսալուսինը, որ դրոշմված էր աստվածուհու կրծքի վրա: Տիրիթը չզարմացավ այդ դրոշմը տեսնելով. նա գիտեր, որ լուսինը հայոց Մեծ տիկնոջ ներկայացուցիչն էր երկնքում:

Փառոս Գողթնեցին չերևաց և Վահագնի մեհյանում: Բայց այստեղ էլ Աստղիկի վարդապսակ արձանի մոտ նա տեսավ հունական Աստղիկի՝ Աֆրոդիտեի արձանը, սակայն հայոց Աստղիկը ավելի գեղեցիկ էր, գուցե նրանից, որ այն ամբողջովին ոսկուց էր ձուլված:

Այնուհետև, երբ զոհաբերվել էին բոլոր արջառները, արքայական շքախումբն ու բազմությունը հորդեց Աշտիշատի հազիվ կանաչին տվող հովիտը: Օրը այնքան հստակ էր, որ ողջ բնությունը թվում էր նկարված է թափանցիկ ճենա-



digitised by A.R.A.R.@





պակու վրա։ Հետո բլրալանջերին, արևի տակ պեծին էին տալիս հալվող ձյունաշերտերը, իսկ Արածանին ասես ոսկու հորդահոս հալվածք լիներ։

Եվ ահա սկսվեցին օլիմպիական մրցումները։ Սկզբում իրենց քաջությունը ցույց տվին հետիոտն և հեծյալ արքայազնները։ Հետո սկսվեցին երկանիվ կառքարշավները, ձիարշավներն ու վազքի մրցումները։ Եթե ամենից հետաքրքիրը գազանամարտերն էին, որոնցից մեկում դանակով զինված մի երիտասարդ մտավ վագրի վանդակը և ամեհի գոտեմարտից հետո պատռեց նրա երախը, ապա ամենագեղեցիկը գուսան-միմոսների, վարձակների և կաքավող աղջիկների երգերն ու պարերն էին, որոնց լարված ուշադրությամբ դիտում էր արքայից-արքան։ Լավագույն պարողներին ու կատակերգուներին վարդապսակներով պարգևատրում էր Մեծ թագավորը, սակայն մնում էր ամենամեծ պարգևը՝ արխարանց[1] տիտղոսը, որի պարգևատրումը արքայից-արքայի իրավունքն էր։ Այդ տիտղոսին պիտի արժանանար նա, ով առաջինը կլիներ վազքի, լողի, ձիարշավի, ըմբշամարտի և նետաձգության մեջ։

Տիրիթը չէր կարողացել տեսնել նրան, որ առաջինն էր եղել չորս մրցումներում։ Ասում էին, որ այդ քաջը մի անծանոթ ռամիկ պատանի է, բրդբրդված հագուստով և տրեխներով։ Եվ ի՜նչ հարկավոր է այդ երջանիկ քաջին տեսնելը, երբ նա չէր գտել հորը, երբ արևն արդեն մայր մտնելու վրա էր, և մոռացել էր Նավասարդյան երգերի մրցության ժամը։

Եվ նա հորն հանդիպելու հույսը կորած, բամբիռը կրծքին սեղմելով՝ կուչ եկավ հայ, պարթև, հույն և ասորի գուսանների խմբի մեջ, սպասելով իր հերթին։

Մեծն Արտաշեսը շատ հավանեց նրա երգն ու հրամայեց ոսկեձույլ բամբիռ տալ և ամենաշքեղ վարդապսակով զուգել Տիրիթի սև գանգուրները։

* * *

Հենց այն պահին, երբ Տիրիթը արքայից-արքայի առջև ծունկի եկած երգում էր իր բարձր ու ոլորուն ձայնով, բազմության մեջ իր որդուն որոնող Փավոս Գողթնցուն թվաց, որ լսում է իր երգը։ Հևիհև ու շփոթված, ամբոխը ճեղքելով, նա մի կերպ հեռվից կարողացավ տեսնել պատանի երգչին, բայց չճանաչեց նրան։ Փողերն ու թմբուկներն արդեն ազդարարում էին օլիմպիական վերջին մրցության՝ նետաձգության սկիզբը։

Բազմությունը ալեկոծվեց. տեսնես այս բազմաթիվ երիտասարդներից ու՞մ է վիճակվելու արխարանց տիտղոսը։ Ահա և չորս մրցումներում հաղթանակած ռամիկ պատանին։

Տիրիթը լարեց տեսողությունը։

Հաղթահասակ պատանին համարյա ցնցոտիների մեջ է և, որպես չորս մրցանակակիր, նրա այտերը, ճակատն ու ծնոտը ներկված են որդան

1 Քաջերից քաջի։

կարմրով: «Իսկ ո՞րտեղ է Վարաժը,— Թախծալի մտածում է Տիրիթը,— մի՞թե նա ոչնչով աչքի չընկավ մրցումներում»...

Եվ, որպես պատասխան, սուլելով թռչում են նետերը: Նշանակետը նիզակի ծայրին խփված մի խնձոր է, տարածությունը՝ 100—150 կանգուն:

Անա նետաձիգներից մնացին միայն երեքը, ոչ ոք մինչև այժմ չի խփել խնձորին: Անհաջող էր նույն նետաձիգի հարվածը, անհաջող անցավ և նախավերջինի՝ գեղացիի պարթևացու ջանքը: Նա այնպես լարեց աղեղը, որ կտրեց լարը, վերցրեց մի նոր աղեղ, սակայն հարվածը վրիպեց:

Մնում է այժմ միայն ռամիկ պատանին, նա, որի դեմքին որդան կարմրով արված դրոշմներ կան:

Հարվա՜ծ...

— Արիարա՜նց, արիարա՜նց,— աղաղակում է բազմությունը ցնծագին:

Նետը թափ էր անցել խնձորի միջով:

Բազմությունը շունչը պահած՝ նայում է արքայից-արքային: Արքան բարձրացնում է ձեռքի ոսկեձույլ մականը, և նետաձիգ պատանին մոտենում է գահին:

— Վարա՜ժ,— հանկարծ բացականչում է Տիրիթը և գրկաբաց նետվում դեպի նա:

Իսկ բազմությունը աղաղակում է ցնծագին.

— Արիարա՜նց, արիարա՜նց...

* * *

Այս բոլորը կատարվեց մեր թվարկությունից առաջ 180 թվականի Նավասարդի առաջին օրը:

Մեծն Արտաշեսը շատ զարմացավ տեսնելով, որ օրվա հերոսը արքայորդի Տիրանի ուսմու-ույց պատանի Վարաժն է, և անչափ հուզվեց իմանալով, որ նա իր տոնական հագուստներն ու կարմրաթիթ տրեխները տվել էր Գողթնցի ազատ Տիրիթին և հագել նրա կարկատած կիսապարեգոտն ու քրքրված տրեխները:

Անա թե ինչու ո՛չ Տիրիթն էր ճանաչել որդան կարմրով ներկված Վարաժին, և ո՛չ Փայլոս Գողթնցին՝ Նավասարդյան հագուստներով պճնված իր որդուն:

Տիրիթն, իհարկե, չէր ընդունի Վարաժի նվերը, եթե իմանար, որ նա ուրիշը չունի: Նա այդպես էլ ասաց:

Եվ արքան ոչ միայն հրամայեց իսկույն ևեթ ոսկեբանված հագուստներ տալ Վարաժին և աջ ոտքին կարմիր կոշիկ հագնելու իրավունք, այլև նշանակեց նրան արքունական որսերի վերակացու:

Հենց այդ պահին, ամբոխը պատռելով, նրանց մոտեցավ Փայլոս Գողթնցին և գետնատարած խոնարհվեց գահի առջև:

— Ո՞վ ես դու,— հարցրեց Մեծն Արտաշեսը, որի դեմքը շողում էր գոհունակությունից:

— Մեծն արքա, նա իմ հայրն է՝ Փայլոս Գողթընցին,— առաջ գալով պատասխանեց Տիրիթը,— նա է հորինել իմ երգած Նավասարդյան երգը:

— Պահանջիր ինձնից ինչ որ կամենաս,— դարձավ արքայից-արքան Փայլոս Գողթնցուն,— ինձ շատ դուր եկավ քո երգը:

— Բայց այդ երգը կմեռնի,— մեծ զարմանք պատճառելով բոլորին, հառաչելով ասաց Փայլոսը:

— Կմեռնի՞. մի՞թե Նավասարդյան երգը կարող է մեռնել,— զարմացավ արքայից-արքան:

— Թե հայոց տառեր չլինեն, կմեռնի հայոց երգը, արքա՛,— պատասխանեց Փայլոսը: —Տառեր տվեք մեզ, տե՛ր իմ, որ ապրեն մեր երգերը: Անա իմ աղերսանքը:

Եվ հպարտ ու գոռոզ արքան, նա, որ իշխում էր պարթևաց սահմանից մինչև սահմանները Հելլադայի և մարաց լեռներից մինչև Պոնտոսի ափերն ալեկոծ, խոնարհեց իր ալեհեր գլուխը:

— Ես ամեն ինչ կարող եմ տալ քեզ, երգի՛չ,— ասաց նա ընկճված ձայնով,— փառք, իշխանություն, հարստություն, բայց տառեր, ավա՜ղ, չե՛մ կարող: Նա՛, ով որ կբերի այդ տառերը՝ բոլոր աշխարհիկ փառքերից բարձր կլինի նրա փառքը:

Այս ասելով նա իր հայացքը հառեց դեպի ձյունապատ լեռնաշղթաները, որոնց վրա, որպես ատրուշան, բոցավառվում էր Նավասարդյան մայրամուտը:

Տիրիթն էլ հայացքն ուղղեց այն կողմը, և հանկարծ նրան թվաց, որ նորից, ինչպես երազում, տեսնում է նրան, որն Արամազդի վեհությունն ունի, երկնագույն աստղալի պատմուճան և աչքերն են արեգակներ...

* *

Դարեր անցան: Իրականացավ Տիրիթի երազը՝ Մեսրոպ Մաշտոցը գտավ հայոց տառերը:

Հետո էլի դարեր անցան, բազմացան և անմահացան հայոց երգերն ու վիպասանությունները, սակայն Տիրիթի անուշ ձայնի պես մոռացվեցին ու կորան խաղերը, Նավասարդյան այդ օրը այնպես քաղցր հնչող ձայնանիշերը Հայոց աշխարհի:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

# ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Դու՝ հնաբառ,
Մեսրոպատառ,
Աղբյուրի պես
Զինջ ու կայտառ:
Դու՝ մոր նման
Միշտ տուն կանչող,
Թե՛ մեղմանուշ,
Թե՛ շառաչող:
Դու դարերի

Արհավիրքում
Թուր ես դարձել
Դավթի ձեռքում,
Դարձել վահան

Պողպատակուռ,
Փշրել անթիվ
Նիզակ ու սուր:
Ու տնկելով

Ելնող շիվեր,
Քայլել ես դու
Դարերն ի վեր:
Որքան քայլել,
Այնքան փայլել,
Այնքան դարձել
Կուռ ու անբիծ
Եվ, ինչ լավ է,
Հասել ես ինձ:

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

## Ա.

Ասորական հին ու ճամփավրա քաղաք է Ամիդը: Երկա՜ր, կեռումեռ ճանապարհներ են գալիս արևելքից և արևմուտքից, գալիս են հյուսիսից, հարավից, ներս են մտնում քաղաքի երկաթակոփ դարբասներով:

Դարբասները շա՜տ են: Դարբասների կողերին անկյունավոր աշտարակներ կան, որտեղ գիշեր-ցերեկ հսկումի են կանգնած ասորի զինվորները: Հեռվից-հեռու էլ փայլում, շառավիղ են տալիս նրանց տեգերի կեռերը, սաղավարտների պղինձն ու մետաղե զրահը:

Ամրակուռ քաղաք է Ամիդը: Տիգրիս գետի հանդարտասահ ջրերը լիզում են նրա հողաշեն բարձր պարիսպների ոտքերը, վնաս չեն պատճառում:

Ամիդում ապրում են ասորիներ, հույներ, պարսիկներ, նաև հայեր: Ահագի՜ն ժողովուրդ կա: Արհեստի մարդիկ են. խոփ են շինում, բահ ու բրիչ, զենք ու զրահ, ափսե ու ճրագ, ականջօղ, գոտի... Տու՜ն են շինում, և՛ ճանապարհ, և՛ առու, որ ջուր առնի Տիգրիսից ու տանի այգիները:

Ամիդում կան մարդիկ, որ աշխարհի բարիքն են տանում-բերում, ծախում են շուկաներում: Մարդիկ կան՝ ճանապարհ տանող և ճանապարհի հանող: Իսկ ավելի շատ՝ մարդիկ, որ գիշերն աստղերին նայելով՝ կարդում են երկնքի խորհրդավոր գիրքը: Կամ բժշկում են հիվանդներին, կամ գրքեր են գրում, արտագրում և դպրոցներում սովորեցնում են կարդալ ու գրել, ճանաչել աշխարհը:

Ամիդ քաղաքը հռչակավոր է սրանցով, այս գիտուն ու փիլիսոփա մարդկանցով: Եվ դրա համար էլ Ամիդի անունն են տալիս հռոմների՝ բյուզանդական աշխարհում, պարսից արքայից-արքայի տերության սահմաններում, ինչպես և հյուսիսական երկրներից, Արքայական ճանապարհով Ամիդին և աշխարհին կապված, Հայաստան երկրում:

Ամիդ քաղաքի բոլոր շուկաներում մագաղաթե ձեռագիր գիրք-մատյան են ծախում: Թանկ է: Գիրքը առնում են ասորիները, հույները. իրենց լեզվով է, ամեն մարդ չի հասկանա: Հայերեն գրքեր չկան: Հայերը խոսում են իրենց մայրենի լեզվով, այդ լեզվով հին-հին երգեր են ասում, պատմություններ պատմում... Բայց հայերեն գիր չունեն, որ ասվածը գրեն և դարձնեն գիրք-մատյան:

Պարսիկներն ասում են՝ պարսկերեն գրեք, պարսկերեն խոսեք, պարսիկ դարձեք: Հույներն ասում են՝ հունարեն գրեք, հունարեն խոսեք, հույն դարձեք: Ասորիներն էլ իրենցն են ասում... Այդպես են ասում, քանի որ Հայաստանը երկու կես են արել, մի բաժինը՝ հույներին, մյուսը՝ պարսիկներին: Եվ



digitised by A.R.A.R.@

ուզում են, որ Հայաստանը դառնա հունական երկիր և պարսկական երկիր։

Հայերը չեն ուզում պարսիկ, կամ հույն, կամ ասորի դառնալ: Հայերն ուզում են հայ ժողովուրդ մնալ:

## Բ.

Առավոտը լույս է ծագում, կրակ-արեգակ է լողանում արևելքում, Տիգրիսի ջրերի մեջ: Օր է բացվում Ամիդ քաղաքի վրա: Քարավաններ են մտնում քաղաք, քարավաններ են ելնում հեռու երկրներ գնալու:

Շուկաներում բացվում են կուղպակների դռները: Արհեստանոցների նեղ ու նեղ, ոլոր ու մոլոր փողոցներում կրակվում են դարբնոցների բովերը, պղինձն ու երկաթը զնգում են, բամբ որոտում, գըլվլոցով պտտվում է բրուտի չարխը...

Առավոտ ծեգին շուկաներում և արհեստանոցների նեղ ու նեղ փողոցներում հայտնվում է Արամիկը: Հայտնվում է, այս ու այն կողմ վազվզում ոտաբոբիկ, գլխաբաց, քուրձ շորով: Եվ բոլորը՝ ասորի ու հույն, պարսիկ ու հայ, ճանաչում են սև խոշորաչք Արամիկին։ Տեսնում, մոտ են կանչում, խոսք են ասում. .



# ավազների վրա

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

— Լուսացավ,— ասում են,— երգ ասա, Արամիկ։

Ու նա ծիծաղում, ու նա ուրախ երգ է ասում իր մայրենի լեզվով: Ասում է եղեգների բոցից ծնված Վահագն մանկան մասին, ծաղկից ու գարնանից է ասում, ձագ ծիծեռնակից... Զնգում, ծլնգում է երգի ելևէջն ու խոսքը նրա լեզվի վրա, և այդ ուրախ ծլվլոցը տարածվում է Ամիդ քաղաքի փողոցներում մինչև շոգ կեսօր:

Կեսօրին Արամիկը ելնում է քաղաքի Արևելյան դարբասից, գնում է լայնահուն, հանդարտասահ Տիգրիսի ափը, պառկում ավազներին: Շոգ է, արև, շիկացած է ավազը, և միայն ջուրն է զով, գետամիջին մոլորված թեթևակի քամին է զովաբեր:

Կեսօրն անց, գետափ են գալիս ասորի ու հույն ծանոթ տղաները: Նրանք գալիս են դպրոցից և երկար ժամանակ, մինչև խմբովի ջուր մտնելը, աղմըկում, պատմում, խոսում են: Մեկն իր սովորած հունարեն գրից ու կարդացածից է ասում, մյուսն իր ասորական գրերից ու գրքից, իր սովորածից: Հետո հենց այդտեղ՝ ավազի վրա եղեգով փորփրում են հունարեն և ասորերեն տառեր, հունարեն և ասորերեն բառեր։

— Մե՜ծ ու հզոր է Ասորեստանը,— ավազին դաջած իր գիրն է կարդում Աբուսաիդը:

Մարկոսը եղեգի ծայրով ցույց է տալիս ավազին գրած հունական նշանագրերը, գրածն է ասում.

— Հի՜ն և իմաստուն ժողովուրդ են հույները...

Եվ անհասկանալի մի տխրություն, մի որբ մենակություն է զգում Արամիկը: Նա տխրում է հունարեն և ասորերեն նշանագրերը չհասկանալու համար: Արամիկն ուզում է, ինչպես Աբուսաիդն ու Մարկոսը, իր խոսքը փորփրել շիկացած ավազի երեսին: Բայց չիմանալով ինչպես բավարարել սրտի ցանկությունը, նորից, և այս անգամ տխուր, երգ է ասում իր մայրենի բառով:

Ելևէջում, ամենքին հասկանալի և սրտամոտ խոսում է գիր չտեսած հայերեն երգը, որ նույնքան հին է, ինչքան հին են գիր ու գիրք, գրավոր խոսք ու դպրոց ունեցող հույներն ու ասորիները...

Երբ մարում է Արամիկի երգը, երեխաների խումբը հանում, մի կողմ է նետում շոր-հագուստը, վազում, ջուրն է նետվում խմբովի: Կոտրատվում է մեղմահոս Տիգրիսի երեսը բռնած արեգակի ոսկին: Կոտրատված ոսկու փշրանքները գրերի զարմանալի նշաններ են թվում: Արամիկը լողալով՝ կրկին ու կրկին մանրում է այդ զարմանալի նշանները: Եվ մտածում է, թե հենց այս շողշողուն ու զնգուն պատկերներն են, որ եթե կարողանա նկարել ավազի վրա, կլինեն հայերեն գրեր, հայերեն բառեր, որոնց իրար կապելով՝ նա երգի է փոխում բոցերից ծնված Վահագն մանկան մասին...

## Գ.

Նորից արև է, շոգ, նորից կեսօր է Ամիդ հռչակավոր քաղաքում, քաղաքային պարիսպներից դուրս՝ Տիգրիս գետի ափին: Արեգակն իր ոսկին է հալում



digitised by A.R.A.R.@



ջրերի վրա: Հակառակ ափից, փշրելով ոսկու հալոցքը, տիկերին բեռնած մի լաստանավ է լողում դեպի Արամիկը:

Նա պառկել է շիկացած ավազին, երեկ դեռ գըրված-չավիրված հունարեն և ասորերեն նշանագրերի կողքին: Փորփրել են Արուսաիդն ու Մարկոսը: Գրերը չեն ջնջվել, և Արամիկը նույն տխրությունն է զգում, նույն մենակությունը: Եվ որպեսզի գոնե տխրի, բայց մենակ չզգա, երգն է հիշել:

Նրա երգը թռչում է գետն ամբողջ, ափից-ափ գնում, ետ է դառնում կոտորակված: Հակառակ ափից դեպի Արամիկը լողացող լաստի ծայրին հավաքվում են մի խումբ ճամփորդական մարդիկ: Նրանց մեջ և նրանց առջև կանգնած է բարձրահասակ, ձեռքերը կրծքին խաչած մի այր տղամարդ: Գլխաբաց է, գետամիջում մոլորված քամին իրար է տալիս մազերը, լայն ճակատին է փռում, լայն ճակատից տանում ետ:

Արամիկը հասկանում է՝ իր երգն են լսում: Ու նա շարունակում է երգել ու երգել...

Ժամանակ է անցնում, սպառվում է երգը: Արամիկը մոռանում է լաստանավն ու նրա ծայրին խմբված օտար մարդկանց:

Հետո սաստկանում է տխրությունը, հետո նա ձեռքն է առնում մոտիկ ընկած եղեգի կտորը և հունարեն ու ասորերեն բառերի կողքին փորփրում է ոլորմոլոր գծեր, ծուռ ու մուռ կորեր: Իր գծերն ու կորերը նա ուզում է գրի նմանեցնել, գետի երեսին փշրվող ոսկու կտորների: Ասում է ինքնիրեն, սա կրակ ու բոց է, որից ծնվում է Վահագնը խարտյաշ մի պատանեկիկ... Սրանք իր՝ Արամիկի գրերն են: Իսկ սա...

Եվ այստեղ, հանկարծ ստվեր է պառկում իր գըրերի վրա: Արամիկը բարձրացնում է գլուխը, մոտիկ կանգնել են օտար, անծանոթ տաս-տասներկու մարդ, իսկ սրանց մեջ է և սրանց առջև այն բարձրահասակը, որ երևում էր լաստի ծայրին: Խելոք ու մեծ են աչքերը, քիչ տխուր և շատ բարի ու ավելի շատ՝ մտածկոտ:

— Ի՞նչ ես անում,— հարցնում է նա կռանալով:

digitised by A.R.A.R.@

— Գրում եմ. չե՞ս տեսնում,— պատասխանում է Արամիկը և շարունակում է գծեր ոլորաններ փորփրելը:

— Տեսնում եմ,— քիչ ուշ շունչ քաշելով, ասում է նա:

— Հայերեն եմ գրում,— վրա է բերում Արամիկը: Իսկ սրանք հունարեն են, սրանք՝ ասորերեն: Այստեղ Արուսյակն է գրել, թե՝ «Մեծ ու հզոր է Աստվածաշունչը»: Իսկ այստեղ՝ «Հին ու իմաստուն ժողովուրդ են հույները», գրել է Մարկոսը...

Իսկ... իսկ քո՞ գրածը,— հարցնում է նա և, չգիտես ինչու, դողում են մագմորուքի մեջ կորած շուրթերը, ձայնը խլանում է:

— Ես գրում եմ՝ «Հայաստան աշխարհ»,— ասում է Արամիկը:— Ես գրում եմ՝ «Ոչ ոք այդպիսի գրեր չունի, ինչպես իմը»: Դրանք իսկական հայերեն են. ես հավաքել եմ Տիգրիսի վրա փշրված ոսկե հալոցքից, դրա համար էլ նրանք մեղմ զրնգում, ծլնգում են... Լսու՞մ ես...

Գետամիջի քամին ափ է խփում գետի մյուս եզրից բերած ոսկե ալիքը, և ջուրը զնգոցով ճողփում, փշրվում է խարխուլ նստած լաստանավի տակ:

Դանդաղ ուղղվում է խոսակից բարձրահասակը, որին մյուսները «ուսուցիչ» են ասում: Ուզում է, ապա, ինչ-որ ասել, բայց ընդոստ շրջվում, գնում է մեծ-մեծ քայլերով, և նրա ետևից գնում են աշակերտները: Նա գնում է առջևից, գլուխը բարձր, մեծ ու մտածկոտ աչքերում՝ ավազի վրա Արամիկի փորփրած գծերն ու կորերը...

Դ.

Ամիսներ են անցել:

Տիգրիսի ափին, շիկացած ավազների վրա, նորից չոքել է Արամիկը, իսկ նրա կողքին՝ լաստանավով եկած բարձրահասակ այր տղամարդը:

— Ես Մեսրոպ Մաշտոցն եմ,— ասում է նա Արամիկին:— Դու ուզում էիր, և ես ահա հայերեն գրեր եմ ստեղծել... Արդեն այդ գրերով կարելի է գրել մեր բոլոր բառերը, մեր բոլոր երգերը, մեր պատմությունը... Արդեն այդ գրերով կգրեն բոլորը, և հազար, ու հազար, և այդքանը այդքանով բազմապատկած տարի ու դար, ու ավելի...

Հետո նա վերցնում է մոտիկ ընկած եղեգի կտորը և խոսքեր է նշանագրում Տիգրիսի ափին, շիկացած ավազների վրա:

— Դու... գրում ես՝ «Հայաստան աշխա՞րհ»,— կամաց հարցնում է Արամիկը:

— Հայաստան աշխա՛րհ,— պատասխանում է Մեսրոպ Մաշտոցը:— Եվ այս էլ՝ արեգակ, այս՝ երգ և երգերի երգ, այս՝ գիրք, այս՝ դպրոց և դպրություն...

Արամիկը լսում և ժպտում է: Նա լայնաչ նայում է իսկական հայերեն գրերին, հայերեն բառերին և երգ է երգում: Զնգում, ծլնգում է նրա երգի եկևէջը, թռչում է լայնահուն գետի մի ափից մյուսը, ետ է գալիս կոտորակված: Եվ նրանք երկուսով ականջ են դնում հայոց երգ ու խոսքի ուրույն հնչյուններին, որոնց արդեն կարելի է հավերժությանը հանձնել, ասես հրաշքով լույս աշխարհ եկած, երկար ճանապարհի եկած մեսրոպյան նշանագրերով:



digitised by A.R.A.R.@

# ՄԵՐ ԼԵԶՈՒՆ

Մեր լեզուն ճկուն է ու բարբարոս.
Առնական է, կոպիտ. բայց միևնույն պահին
Պայծառ է նա, որպես մշտաբորբոք փարոս.
Վառված հրով անշեջ դարերում հին։

Եվ վարպետներ, խոնարհ ու հանճարեղ,
Հղկել են այն դարեր, որպես մարմար.
Եվ փայլել է նա մերթ, ինչպես բյուրեղ.
Մերթ կոպտացել, ինչպես լեռնային քար...

*ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ*





Այս թուղթը կարդալիս հիշե՛ք անմահ այն Մաշտոցին,
Որ լույս էր հավաքում երկրից— երկիր թափառական,
Եվ իբր արճիճ հալեց իր սեփական հոգին.
Ու շիկացած երազի մեջ պայծառ երևացին
Հայոց գրերն ու ապագան։

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*



Բա՛ց շուրթերդ, խոսի՛ր, անգի՛ն,
Ժիր դայլայլի՛ր, ի՛մ սիրասուն,
Թող մանկանա՛ քո շուրթերին
Մեր ալեհե՛ր հայոց լեզուն...
Պահի՛ր նրան բարձր ու վճիտ,
Արարատի սուրբ ձյունի պես,
Պահիր նրան սրտիդ մոտիկ,
Քո պապերի աճյունի պես,
Ու ոսոխի զարկից սև
Դու պաշտպանիր կրծքով նրան,
Ինչպես մո՛րդ կպաշտպանես,
Թե սո՛ւր քաշեն մորդ վրա...

*ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ*

digitised by A.R.A.@



1211 թ. Հաղպատի Ձեռագիր: Խորան:

digitised by A.R.A.R.@



1323 թ. ձեռագիր։ Գլաձոր։ Լուսանցքների զարդանկարները։



XV դարի սկզբի ձեռագիր Տաթևից։

Անվանաթերթի զարդանկար։



Կիլիկյան ձեռագիր XIII դարի երկրորդ կեսի։

Խորանների վերին մասերը։

digitised by A.R.A.R.@



1323 թ. ձեռագիր: Գլաձոր: Լուսանցքների զարդանկարները:



XV դարի սկզբի ձեռագիր Տաթևից:

Անվանաթերթի զարդանկար:



Կիլիկյան ձեռագիր XIII դարի երկրորդ կեսի:

Խորանների վերին մասերը:

digitised by A.R.A.R.@



# ՊԱՊԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԸ

ՇՄԱՎՈՆ ԹՈՐՈՍՅԱՆ

Նկ. ՄԱՆՍՈՒԿ ԱՐԴՅԱՆԻ

Բլրաշարքերը ձգվում են արևելյան ու արևմըտյան կողմերով։ Նրանք պատսպարում են ձորակը, ուր գիշեր ու զոր առվակն է հոսում։ Մի փոքրիկ առվակ, որը կիսում է ձորակում նստած գյուղը։

Այդ գյուղում մի քիչ տարօրինակ, մի քիչ յուրօրինակ մարդիկ են ապրում, շատ սիրելի մարդիկ։ Բայց ի՜նչ իմանար այն փոքրիկ գառնարած տղան,՝ թե ինչով են այդքան սիրելի հենց այդ մարդիկ։

Նա՝ այդ փոքրիկ տղան չարաճճի էր, սիրում էր թափառել դաշտերն ու ձորերը, ուշ էր տուն բերում գառները և իր պապերի կողքից չէր հեռանում, իսկ նրանք՝ նրա հալիվ պապերը իրենց թոռնիկին անուշ-անուշ զրույցներ էին պատմում անծանոթ ու կորած աշխարհի մասին, հեքիաթանման հրաշալի զրույցներ։

Նա՝ այդ ժիր ու թրխամուն տղան քեռի էր ասում բոլոր նրանց, ովքեր իր մորական պապի երկրից էին և հորեղբայր՝ նրանց, ովքեր հորական պապի երկրից էին։

Եվ այդ «երկիր» բառը անվերջ անցնում էր շուրթե-շուրթ, ու գառնարած տղան կլանում էր այդ երկրի մասին այդ երկրի մարդկանց զրույցները։

Մի պապը Սև սարից ու Դավթից էր պատմում, գազպերից ու արջերից, մյուսը՝ Մշո դաշտից, Սուրբ Կարապետից ու Հացիկից։ Շատ են զրույցները, բոլորը չես պատմի։ Զրույցներ՝ անուշ ու արցունքաթոր, զրույցներ՝ ուրախ ու իմաստուն, զրույցներ՝ խոր ու խորհրդավոր։

Ու բոլորը հեքիաթի պես էր... հեքիաթային էին պապերն իրենց ամուր բազուկներով, իրենց սպիներով, կոշտ ու վայրի դիմագծերով և բանաստեղծորեն նուրբ, փափուկ, դյութական սրտերով։ Եվ այդ երկրի զրույցները, հարսանիքները՝ իրենց «գովընդներով», մշուշ ու հուշ դարձած Մուշի մասին երգերը օրորում էին գառնարած տղային, լցնում նրա ռոմանտիկան։

Մշու դաշտը մշուշ է,
Ուր հողն ու ջուրն անուշ է,
Բոբիկ մը՛ քելի, փուշ է։

Եվ կամ՝

Ալաշկերտ, Մալազկերտ
Մանդր ու բեդ գե՞ղ է։
Ու ջուր լէ, կըսին թէ,
Հիվընդին դե՞ղ է։

... Իսկ տատիկը գուրգուրում է իր թոռնիկին, նրան ծուռ Դավիթ, գառնարած Դավիթ էր ասում, որովհետև թոռնիկը հենց այդ Դավթի նման շատ էր մաշում պապի կարած տրեխները։ Եվ երբ թրջված տուն էր գալիս թոռնիկը, տատը թանապուրի պուլիկը հանում էր թոնրից.

— Դե կե՛ր, ծու՛ռ Դավիթ, Սուրբ Մեսրոպ քեզ պահապան։

Եվ հաճախ տատիկներն ու պապիկները աստծո հետ միասին տալիս էին Մեսրոպի անունը։ Եվ ի՞նչ հասկանար այն փոքրիկ տղան, թե ինչու են Սուրբ Մեսրոպ ասում. չէ՞ որ հենց այդ գյուղում կար և մեկ ուրիշ հորեղբայր Մեսրոպ, հորեղբայր Մեսրոպ՝ եկած Հացիկից։

Մինչդեռ տատիկն ասում էր.



digitised by A.R.A.R.@

— Սուրբ Մեսրոպ Թարգմանիչ, քեզ պահապան։

Արի ու հասկացիր՝ Սուրբ և Մեսրոպ, Սուրբ և Թարգմանիչ։

Բայց չէ՞ որ փոքրիկ տղայի համար Սուրբը ինչ-որ աննյութ, հեռավոր ու անիրական է, հապա էլ ի՞նչ Սուրբ Մեսրոպ։

Չէ՛, գլուխ չես հանի։ Թող պատմեն պապերը։

— Լա՛ո, Սուրբ Մեսրոպ քեզ պահապան։

Եվ այդ խոսքերը ուշ գիշերներին շշնջում էին փոքրիկ տղայի սնարի վրա, հեռու Տարոնից գաղթած և այստեղ՝ բլուրներով պատսպարված այս գյուղում օթևանած տատիկներն ու պապիկները։

Ո՞վ է այդ Սուրբ Մեսրոպը, որի զորության մասին այս զրույցների շնորհիվ փոքրիկ տղայի համար այնքան խորհրդավոր աշխարհ է բացվում, և այնքան հանելուկային ու պատկառելի էր թվում հորեղբայր Մեսրոպ հացիկցին, որ գյուղի կատարածուն էր։ Ի՞նչ երկրի մասին են այդքան խոսում այս գյուղի մի քիչ տարօրինակ ու մի քիչ յուրօրինակ, թախծոտ ու բարի մարդիկ։ Թող պատմեն պապերը։

## ՋՐՈՒՅՑ ԱՌԱՋԻՆ

Եղել է հեռու մի երկիր, այդ երկիրը կոչվել է Մուշ ու Սասուն, և այնտեղ են ապրել փոքրիկ տղայի պապերն ու հայրերը։ Գեղեցիկ, շատ գեղեցիկ է եղել այդ երկիրը։ Այնտեղ մեղրածոր գազպեն է իջել թփերին, և կաքավներ են որսացել այդ երկրի մարդիկ։ Անուշ հող ու ջուր է ունեցել Մշո երկիրը, բայց ուրախ չի եղել մշեցու կյանքը։ Թուրքերը գրկել, թալանել, խոշտանգել են նրան։ Հետո վայրագ ու չար կոտորած է եղել, և այդ երկրից, այդ անուշ երկրից թուրքերը քշել են փոքրիկ տղայի պապերին ու հայրերին, որոնք «Խաչապաշտ, օրհնված ուռուսի» օգնությամբ փախել ու եկել են այս գյուղը, ուր և աշխարհ է եկել փոքրիկ չարաճճի տղան։ Նա աշխարհ է եկել և այն տեսել կարմիր ու գեղեցիկ ու չի իմացել իր պապերի, իր հայրերի վշտի, նրանց կորցրած երկրի մասին, բայց այդ հեռուներում կորած երկրի մասին է, որ պատմում ու խոսում են պապերը...

## ՋՐՈՒՅՑ ԵՐԿՐՈՐԴ

Իսկ ո՞վ է Սուրբ Մեսրոպ Թարգմանիչը։

Այդ հեռավոր, այդ մշուշ դարձած Մուշում կա մի գյուղ, անունը՝ Հացիկ։ Հենց այդ Հացիկ գյուղից է Սուրբ Մեսրոպ Թարգմանիչը, ուրեմն նա փոքրիկ տղայի հայրերի ու պապերի երկրից է։ Ուրեմն նա սուրբ է, բայց և համագյուղացի։



Այսպես առաջին անգամ այն փոքրիկ տղան իմացավ, որ սուրբը մարդ է... ու պատմում են պապերը։

... Մեսրոպ հացիկցին տեսավ, որ իր ժողովուրդը խավարի մեջ է, չունի գիր և գրականություն։ Վեր կացավ նա երկրե-երկիր ման եկավ, գտավ սուրբ գրերը, աշխարհի պատմությունները թարգմանեց ու տվեց հայերին։ Աստծո զորություն կար Մեսրոպի հոգում, դրա համար էլ հրաշք երևաց նրա աչքին, ու հրաշքով նա տեսավ հայոց գրերը։ Դրա համար էլ նա սուրբ է։

Ու հավատում էին, ու պատմում էին զառնաբած փոքրիկ տղայի պապերն ու հայրերը, որ գոյություն չունեցող աստվածը իր զորությունը տվել է հենց իրենց համագյուղացի Մեսրոպին, որ ստեղծեր հայոց գրերը։

Երբ մեծացավ փոքրիկ տղան, դպրոցում սովորեց հայոց այբուբենը, երբ արդեն կարմիր փողկապ էր կապում նա ու գիտեր, որ աստված չկա, բայց դեռ լավ չգիտեր Մեսրոպի պատմությունը։ Պապը նրան ուրիշ զրույցներ էլ պատմեց։

## ՋՐՈՒՅՑ ԵՐՐՈՐԴ

Սուրբ Մեսրոպի գերեզմանը, որը գտնվում է հացիկցի Թորեի տան այգու մոտ, զորավոր գերեզման է։ Այնտեղ, այդ գերեզմանի վրա կառուցված է մի վանք, իսկ գերեզմանաքարին գրված է Մեսրոպի սուրբ գործի մասին։

Հարևան գյուղերից թուրք ավազակները հաճախ գալիս էին Հացիկ, որպեսզի գողանան փոքրիկ տղայի պապերի ու հայրերի անասունները։ Բայց Սուրբ Մեսրոպի գերեզմանը, այդ գերեզմանից ելնող խորհրդավոր զորությունը խափանում էր չարը։

Ինչպե՞ս էր խափանվում չարը։

Օրը ցերեկով ավազակների աչքերը մթնում էին։ Հենց որ նրանք մոտենում էին Սրբի գերեզմանին, ցերեկը դառնում էր մութ ու խավար գիշեր, ու նրանք՝ այդ թուրք ավազակները Մաշտոցի զորությունից վախեցած՝ ետ էին փախչում։

Եվ այդպես էլ փոքրիկ տղայի հայրերն ու պապերը այնտեղ, այն հեռավոր Հացիկում թողել են նաև Մեսրոպի գերեզմանը։



digitised by A.R.A.R.@




## ՁՐՈՒՅՑ ՉՈՐՐՈՐԴ

*Այն ժամանակ, իսկ դա շատ, շատ առաջ էր, երբ իր մեծ գործը կատարելուց, Հայաստանում դպրոցներ բացելուց, աշակերտներ պատրաստելուց հետո Մաշտոցը վախճանվեց, կատարելով նրա խնդրանքը՝ հայոց մեծամեծները բերեցին նրա մարմինը, որ թաղեն Հացիկում։ Մաշտոցը ցանկացել էր, որ մահից հետո իր դագաղը դնեն երկանիվ սայլի վրա, ու գոմեշները քաշեն այդ սայլը, պտտեցնեն Հացիկի դաշտերում և որտեղ կանգնեն, այնտեղ էլ թաղեն իրեն։*

*Իսկ ո՞րտեղ կանգնեցին գոմեշները։*

*Թորեի տան տակ գտնվող ծաղկազարդ հովտում, աղբյուրի կողքին, ուր այժմ կանգնած է Մեսրոպի վանքը, որի մեջ գտնվում է նրա գերեզմանը։*

*Ուրեմն այնտեղ, հենց Հացիկո՞ւմ մնաց Մեսրոպի գերեզմանը։ Այնտե՞ղ է թաղված նա։ Ո՛չ։ Զրույցը դեռ չի վերջացել...*

## ՁՐՈՒՅՑ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Այն ժամանակ, երբ Հացկա գոմեշները կանգնեցին Թորեի տան տակի աղբյուրի մոտ, հայոց մեծամեծները նորից խորհրդի հավաքվեցին, որ խորհեն, քննեն ու որոշեն, թե ինչպես թաղեն Սրբին։*

*Երկար, շատ երկար մտածեցին, և նրանց միջի իմաստունները այսպես ասացին.*

*— Մեծ, շատ մեծ մարդ է Մեսրոպը։ Նա պետք է դարերով մնա. ինչպե՞ս նրան թաղենք այս հեռավոր, աննշան գյուղում, հայոց կենտրոնից այսքան հեռու։ Ավելի լավ է, որ Մեսրոպի մարմինը տանք «Ներս» և թաղենք այնտեղ, մեծամեծների կողքին։ Իսկ հեռավոր մշեցիների համար այդ «Ներսը» Երևանն էր, Մասիսի ոտքերի տակ փռված էջմիածինը, Արարատյան դաշտը։ Սակայն առաջ եկան Սրբի ազգ-երամը, հացիկցիները և խնդրեցին, որ գոնե մի նշխարք, մի մատնիք թողնեն Հացիկում՝ ի հիշատակ։*

*Ու այն ժամանակ հայոց մեծամեծները որոշեցին հենց այստեղ թաղել Մեսրոպ Հացիկցու երկուլթի եղունգը ու նրա վրա դնել գերեզմանաքար և կառուցել վանքը՝ Թարգմանչի։*

*Հետո, շատ տարիներ հետո, հենց այդ վանքում եղած դպրոցում զառնարած փոքրիկ տղայի պապերը սովորել են հայոց գրերը։*

*Իսկ ո՞ւր տարան Մեսրոպի աճյունը։*

*Հայոց մեծամեծները երան խմբով, փառքով ու շուքով, Մեսրոպին տարան Օշական, նրան թաղեցին Արարատյան դաշտում, Արարատի դիմաց։ Վրան դրեցին քար ու հիշատակ՝ տաճար կառուցեցին, որ մնա գալիք դարերին...*

## ՁՐՈՒՅՑ ՎԵՐՋԻՆ

*Հետո՞։ Հետո մեծացավ այն փոքրիկ տղան, ծերացան, աշխարհից գնացին նրա պապերը, իսկ տղան մեսրոպյան գրերով սովորեց կարդալ ու գրել, իր հայրերի ու պապերի փառքը հասկացավ, աշխարհ ման եկավ, շատ բան տեսավ ու իմացավ։*

*Նա գնաց Օշական և տեսավ Մեսրոպի գերեզ-*



digitised by A.R.A.R.@

մանը։ Մարով Թախտանից ճեռավոր Հացիկում, որ խաղացել ու մեծացել էր Մեսրոպը, որ գուցե հիմա էլ կանգնած է նրա հիշատակի վանքը, նրա կարծեցյալ գերեզմանը։ Եվ այդ օրան սկսեց ավելի խոր ճանաչել Սուրբ Մեսրոպի կյանքն ու գործը, դրանց մասին իր պապերի զրույցները։ Հետո նա կարդաց Կորյուն Սքանչելու՝ Մեսրոպի աշակերտի՝ իր ուսուցչի մասին գրած գիրքը ու տեսավ, որ պապերի պատմածները ճշմարտախառն են, բայց իրական։

Նա ճանաչեց, որ անմար ջահ է եղել մեսրոպյան մեծ սերը, որ բռնկվել ու վառվել է 1600 տարի առաջ, բայց որի ցոլքերը մնում են մինչև հիմա և լուսավորում մեր ճանապարհը։

Նա տեսավ ու ճանաչեց, որ երախտագետ հացիկցիները հենց այդ լուսավոր ջահի արդար ցոլքերին են վերագրել այն զորությունը, որը կուրացնում է չար դիտավորությամբ գյուղին մոտեցող թուրքերին։

Նա ճանաչեց, որ այդ հրաշապատումներով ու զրույցներով հայերն ուզում են ասել, թե՝ վայ նրան, ով կփորձի ձեռք բարձրացնել Մեսրոպի երեսունվեց հուշարձանների, նրա անմահ գրերի ու այդ գրերով ապրող ու հավերժության գնացող ժողովրդի վրա։

Նա ճանաչեց, որ Սուրբ նշանակում է արդար, մաքուր ու զորավոր, իսկ ժողովուրդը արդար, մաքուր ու զորավոր է համարում նրան, ով իր կյանքը նվիրում է ժողովրդին։ Հասկացավ ու սիրեց այդ գրերը, ինչպես սիրում են արևն ու արշալույսը, մորն ու հայրենիքը, ինչպես սիրում է մարդն ինքն իրեն, իր էությունը, իր գոյությունը։ Հասկացավ և նա՝ այդ փոքրիկ գառնարած տղան ցանկացավ, որ միայն արդար ու ճիշտ բաներ գրվեն Մեսրոպյան տառերով։

Եվ այդ փոքրիկ տղան, որ հիմա մեծացել է, ահա այս զրույցն է գրում հենց նույն 1600 տարեկան, բայց և հավերժ երիտասարդ մեսրոպյան գրերով։






ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

## Ա.

Երբ ես վեց տարեկան դարձա, տատս իր սնդուկներից մեկից դուրս քաշեց մի գրքույկ և ասաց, որ դա կոչվում է «Քերական»։

Այս անմոռանալի գրքույկը մինչև հիմա իմ տեսած գրքերից տարբեր կազմվածք ուներ։ Սովորաբար բոլոր գրքերի շապիկներն ավելի հաստ են լինում, քան գրքի թուղթը։ Տատիս «Քերականը» տարբերվում էր սովորական գրքերից նրանով, որ թղթերն ավելի հաստ էին, իսկ գրքի շապիկը ծխախոտի թղթի նման նուրբ էր, նուրբ ու նարնջագույն։

Տատս սկսեց սովորեցնել ինձ տառերը, հետո՝ բառերը։

Ամեն անգամ, երբ պետք էր լինում ցույց տալ մի տառ կամ հեգել բառը, նա ընդհատում էր գուլպա գործելը և գուլպա գործող երկաթե շյուղով ցույց էր տալիս տառերն ու բառերը։ Շուտով ես սկսեցի հեգել բառերը և հեգում էի այսպես.

— Կեն—այբ՝ կա՛, չա—այբ՝ չա կաչա, դա—այբ—կեն՝ դակ կաչադակ։

Կամ՝

— Վև—այբ—րե՝ վար, դա—այբ՝ դա վարդա, պե—եչ—տյուն՝ պետ վարդապետ։

Մի տարի հետո ես դպրոց ընդունվեցի, ինձ վիճակվեց բոլոր աշակերտների նման ունենալ նոր դասագիրք, որը կոչվում էր «Մայրենի լեզու»։ Առաջին դասագրքերից իմ հիշողության մեջ մնացել է երկու տող մայրենի լեզվի մասին.

*Մայրենի լեզու, մայրենի բարբառ,*
*Ախորժ, բնատանի իմ հոգու համար...*

Իմ առաջին դասագրքերից ես լսեցի Մեսրոպ Մաշտոցի և Սահակ Պարթևի մասին, մինչև հիմա չեմ մոռացել նրանց նվիրված բանաստեղծությունից մի քանի տող.

*Պանծացեք, ո՜հ, Սահակ-Մեսրոպ,*
*Հայ շավիղին մենք սրտատրոփ*
*Գնացինք անխափան...*

Այս այդ հիշարժան բանաստեղծության սկիզբն

digitised by A.R.A.R.@

էր, բայց ես հիշում եմ նաև նրա երկու, վերջին տողերը.

*Ու ձեր աչքերն թող միշտ նայեն*
*Մեր կապտաբոսոր ջայլերուն:*

Թող միշտ նայեն, բայց ահա ես դրանից առաջ դպրոցում սովորեցի հեգելու. Նոր եղանակ և ուզեցի իմ գիտությամբ փայլել տատիս մոտ: Մի օր ես նրա ներկայությամբ սկսեցի բարձրաձայն հեգել.

— Ա, բ,–ա, գ. ի, լ— արագիլ...

— Տատս ընդհատեց գուլպա գործելը և ինձ ուղղեց.

— Այբ—բե—այբ՝ արա, գիմ—ինի—լյուն՝ գիլ— արագիլ:

Ես տատիս հակաճառեցի. բացատրեցի, որ այդ ձևը հին ձև է, որ դպրոցում այդպես չեն սովորեցնում. որ...



Տատս բարկացավ, նա բարձրացրեց իր գուլպա գործող երկաթե շյուղը, թափ տվեց ինձ վրա և սաստեց.

— Սուրբ Մեսրոպի գործերին չի կարելի խառնվել. ինչպես նա ասել է, էնպես էլ պիտի ասվի...

— Մեր ուսուցիչը, պարոն Օհանեսը...—փորձեցի ես առաջ տանել իմ խոսքը, բայց տատս չթողեց, որ ես շարունակեմ, և ձայնը բարձրացրեց.

— Պարոն Օհանես սուրբ Մեսրոպ չի՛...

Այս ընդհարումից ես մի բան իմացա, որ մինչ այդ չգիտեի, և այդ այն էր, որ մեր հայերենի ուսուցիչ պարոն Օհանեսից ավելի մեծ մարդ կա աշխարհում և այդ մեծ մարդը կոչվում է Սուրբ Մեսրոպ...

Պարոն Օհանես, թե սուրբ Մեսրոպ, այս չէ կարեվորը, կարևորն այն է, որ գիրքը դարձավ իմ առաջին սերը: Դեռ մինչև հիմա քթիս մեջն է իմ առաջին դասագրքերի հաճելի՛ բուրմունքը: Օ, այո, գրքերը բուրում են, և ամեն գիրք ունի իր սեփական բուրմունքը, ինչպես ամեն ծաղիկ ունի իր հոտը:

## Բ.

Իմ տատը կիսագրագետ էր, իմ տատը հավատում էր, շատ էր հավատում գրքերին և «կարդացվոր» մարդկանց: Երբ դեռ փոքր էի, նա իմ հարցերին տալիս էր բավարար պատասխաններ, բայց ահա տարիքիս հետ իմ հարցերը բարդացան, և նա ստիպված եղավ խոստովանելու իր անզորությունը:

— Կմեծանաս, գրքերից կիմանաս,— հանգստացնում էր ինձ տատս:

Ըստ երևույթին, շատ բան ինձ վիճակված էր իմանալ գրքերից, բայց ես ամենից շատ ուզում էի իմանալ մի բան... Իսկ այդ «մի բանի» մասին ես չհարցրի, երբեք չհարցրի տատիկիս: Ըստ երևույ-



թին, մեծ վշտերի մասին չի կարելի խոսել, ըստ երևույթին, մեծ վշտերի մասին պետք է լռել...

Իսկ այդ մեծ վիշտն այն էր, որ իմ աջակողմյան աչքը ծուռ էր, այնքան ծուռ, որ մեր թաղի երեխաներն ինձ հանգիստ չէին տալիս. երբ ինձ տեսնում էին, նրանք, այդ սարսափելի տղաները՝ սկսում էին գոռալ ու կանչել.

— Շլոն եկավ, Շլոն եկավ, Շլո՛, Շլո՛...

Իմ անունը մոռացվեց.

— Շլո, մոտ արի... Շլո՛, Շլո՛:

Ես սկսեցի խուսափել երեխաներին հանդիպելուց. փողոց էի դուրս գալիս, երբ նրանք խաղում էին այգում, և այգի էի մտնում, երբ նրանք աղմկում էին փողոցում: Ես երկար-երկար կանգնում էի հայելու դեմ և զննում իմ աչքերը: Կասկած լինել



digitised by A.R.A.R.@



*Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ*

չէր կարող. իմ աջակողմյան աչքը շիլ էր... հայելու դեմ կանգնած՝ ես լալիս էի իմ մեծ վիշտը:

Երբ ես այնքան գրագետ դարձա, որ բացի իմ դասագրքերից, սկսեցի օգտվել նաև «Ազատության լույս» գրադարանից, այս անգամ մայրս իր սնդուկներից մեկից դուրս քաշեց մի բանալի և հանդիսավոր կերպով հանձնեց ինձ.

— Սա քո հոր գրքերի մեծ սնդուկի բանալին է. սնդուկի բոլոր գրքերը քոնն են... Կարդա, հորդ նման խելոք եղիր:

Ես մեծ հափշտակությամբ սկսեցի քրքրել գրքերը: Ժամանակի ընթացքում փոշոտվել էին նրանք: Ես դատարկեցի սնդուկը, մաքրեցի սնդուկը, մաքրեցի գրքերը և նորից դասավորեցի:

Զանազան կազմի և մեծության գրքերի մեջ իմ ուշադրությունը գրավեց կաշեկազմ մի գիրք. Ներսի շապիկի վրա գույնզգույն տառերով գրված էր «Բժշկարան»:

Ես սկսեցի թերթել. կարդում էի, շատ բան չէի հասկանում, բայց մի բան հասկացա. «Բժշկարան»-ում այբբենական կարգով տպված էին բոլոր հիվանդությունները և նրանց բուժելու միջոցները:

Ես գտա «աչք»-ը: «Հիվանդ աչքը բուժելու...», «բորբոքված աչքը բուժելու...», «հատիկ ընկած աչքը բուժելու...» և ահա, վերջապես, «շիլ աչքը բուժելու...»

Ես դողացի ամբողջ էությամբ իմ գյուտից և կարդացի.— «Շիլ աչքը բուժելի, եթե ծածկես առողջ աչքը և նայես շիլ աչքով»:

Ուրիշ ոչինչ:

Ես մաքուր թաշկինակով ծածկեցի ձախ աչքս:

## Գ.

Աղմուկ բարձրացավ թե՛ տանը, թե՛ փողոցում, թե՛ դպրոցում: Ինչու՞ եմ կապել մի աչքս: Աչքի հիվանդություն ունեցողներին չի թույլատրվում դպրոց հաճախել. պարոն Օհանեսը գրեթե ուժով բացում է աչքս և նայում ուշադրությամբ. աչքը առողջ է. նույն կերպ վարվում է տատս: Հարցնում են, ինչու եմ կապել աչքս, իսկ ես լռում եմ. ես ոչ ոքի չեմ հայտնում իմ մեծ գաղտնիքը: Անհանգիստ էր նաև մայրս. ես նրան պարզապես ասացի, որ աչքս ցավում է... Նա թերահավատությամբ նայեց ինձ, վպտաց սխուր ժպիտով և տվեց ավելի մաքուր թաշկինակ առողջ աչքս ծածկելու համար...

Անցան ամիսներ, և բոլորը հաշտվեցին իմ կապված աչքի հետ և երևի շատ զարմանային, եթե մի օր ինձ տեսնեին երկու աչքով, առանց թաշկինակի:

Նորից ամիսներ, և սկսվեց մեծ գաղթը: Մենք թողինք մեր երկիրը թուրքերին և փախանք էջմիածին, Երևան, փախանք, որպեսզի թուրքերը մեզ չկոտորեին: Ճանապարհին ես կորցրի և՛ մորս, և՛ տատիկիս, կորցրի բոլոր հարազատներիս, կորցրի և աչքիս թաշկինակը:

Ես ընկա որբանոց ինձ նման անհայր և անմայր հարյուրավոր և հազարավոր երեխաների հետ:

Տատիս այլևս չտեսա ես. նա կորավ գաղթի ճանապարհին, բայց մորս գտա: Նա կարոտով գրկեց ինձ, համբուրեց, արցունքով և ժպիտով լեցուն աչքերով նայեց երեսիս և զարմանքով բացականչեց.

— Տղա՛, աչքդ ուղղվեր ի...

Այո, ուղղվեց իմ աչքը. ոչ միայն ուղղվեց, այլ իմ երկու աչքերը բացվեցին շնորհիվ գրի և գրքերի: Ու հիմա, երբ նայում եմ իմ կյանքի անցած ճանապարհին, երախտապարտ սիրով հիշում եմ իմ տատիկին, մորս, մայրենի լեզվի իմ առաջին ուսուցիչ պարոն Օհանեսին և ամենից վեր ու ամենից բարձր Մեծն Մեսրոպ Մաշտոցին, որը ծնվեց 1600 տարի սրանից առաջ և ապրում է մինչև այսօր ու պիտի մնա անմահ և գալիք, գալիք բոլոր սերունդների սրտում:

Մեսրոպ Մաշտոցը ուղղեց միլիոնավոր աչքեր, Մեսրոպ Մաշտոցը սրեց մի ամբողջ ժողովրդի տեսողությունը:



digitised by A.R.A.R.@

# ԱՅԲՈՒԲԵՆԻ ԱՌԱՋԻՆ ՏԱՌԸ

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ

Կիրակի օրը հայրը տղային տարավ կինո: Ջերմ, արևոտ օր էր: Տղան բռնել էր հոր ձեռքը. կինոթատրոնը նրանց տնից հեռու էր, և շուրջն ամեն ինչ հետաքրքիր էր՝ և՛ խայտաբղետ հայտագրերը, և՛ խանութների ցուցափեղկերը, և՛ գույնզգույն հագուստներ հագած երեխաները: Երբ հայրը թողեց տղայի ձեռքը, նա հեռացավ նրանից, մոտեցավ մի ցուցափեղկի և ճակատը հպեց ապակուն: Հետո տղան իրենց բակում փորված գազատարի խրամատի մոտ, հողաթմբին նստած՝ պիտի պատմեր իր ընկեր Շարային. «Ես տեսա իսկական փոքր գնացք, իսկական փոքր երկաթգծի վրա, իսկական փոքր ինքնաթիռ, իսկական փոքր ատրճանակ»: Այդ Շարան միշտ լսում էր զարմացած, և տղան համոզված էր, որ նա իրենց բակից այդքան հեռու չի գնացել և այդ ամենը չի տեսել:

Տղան ճակատը ցուցափեղկին հենած՝ երկար կանգնեց ցուցափեղկի առջև, ապա կանգնեց պաղպաղակի կրպակի մոտ: Հետո այդ մասին նա Շարային կպատմեր. «Կա երեք տեսակ պաղպաղակ՝ թղթով, առանց թղթի և շոկոլադի մեջ փաթաթված»: Այդ Շարան միշտ լսում էր զարմացած և, երևի, ոչ մեկից չէր կերել:

Հենց այդտեղ, պաղպաղակ վաճառողի մոտ հայրը գտավ տղային.

— Ես քեզ ասացի՝ հեռու մի՛ գնա,— բարկացավ հայրը,— դու դարձյալ չես լսում:

Տղան վստահ էր, որ հայրը կների և զգում էր, որ իսկապես որևէ անուղղելի սխալ չէր եղել, որի համար արժենար ավելի բարկանալ: Եվ բռնեց հոր ձեռքը:

— Մենք ի՞նչ կինո կտեսնենք,— հարցրեց:

— Երեք փոքրիկ որսորդների ու քաջ նապաստակի մասին,— ասաց հայրը:

— Ո՞րտեղից գիտես:

— Այնտեղ տառերով գրված է,— ասաց հայրը և ցույց տվեց հայտագրերը:

— Այնտեղ ի՞նչ է գրված,— հարցրեց տղան:

— Պաղպաղակ:

— Այնտե՞ղ:

— Ավտոմատ հեռախոս:

— Ամեն ինչ գրվում է տառերո՞վ,— հարցրեց տղան:

— Ամեն ինչ,— ասաց հայրը:— Երբ սովորես, դու ինքդ կկարդաս:

Հետո տղան պիտի պատմեր իր ընկեր Շարային. «Մենք տեսանք երեք քաջ որսորդների ու փոքրիկ նապաստակի մասին հեքիաթ. հայտագրում տառերով այսպես էր գրված. աշխարհում ամեն ինչ գրվում է տառերով՝ կինոն էլ, պաղպաղակն էլ, ավտոմատ հեռախոսն էլ, ամեն ինչ»:

Տոմսարկղից քիչ հեռու հայրը թողեց տղայի ձեռքը.

— Դու այստեղ սպասիր,— ասաց,— մինչև ես տոմս կվերցնեմ:

Տղան կանգնել էր պատի մոտ. նա նայում էր պաղպաղակի կրպակի վերևում շարված տառերին և մտքի ասում էր. «Պաղպաղակ». նայում էր հեռախոսի խցիկի վերևի տառերին և մտքի ասում էր. «Ավտոմատ հեռախոս»:




Դիմացի շենքի ցուցափեղկերի վերևում էլ տառեր կային: Տառեր կային և՛ այդ շենքի վերևում, և՛ մարդատար ավտոմեքենաների կանգառում, և՛ մյուս շենքերի պատերին: Այդ տառերին նայելիս տղան մտքի ոչինչ չէր ասում. նա դեռ չէր ճանաչում տառերը: Քիչ հեռու, զբոսարանում պահակը ջրում էր կանաչ խոտերը: Խողովակին



digitised by A.R.A.R.@

ամրացված ցնցուղից ջրի շիթերը հովհարաձև ցայտում էին, շիթերի մեջ դողդողում էր կարմիր-կանաչ ծիածանը։ Գրավիչ էր, և տղան մոտ գնաց ծիածանը մոտիկից տեսնելու։ Ծիածանը դարձավ կարմիր ու դեղին և, երբ պահակը շարժում էր ցնցուղը, ծիածանը գալարվելով քաշ էր գալիս կանաչ խոտերի վրա։ Պահակը լուրջ էր։ Տղային թվաց, թե նա չի նկատում կարմիր-դեղին ծիածանը կամ թե չի զգում, թե դա որքան գրավիչ է. նա ցանկացավ խոսել այդ մարդու հետ։

— Ջրո՞ւմ ես,— հարցրեց նա, թեև պարզ էր, որ պահակը ջրում էր։





— Ի՞նչ կա,— հարցրեց պահակը։

Տղան զգաց, որ իրենց խոսակցությունը այնպես չստացվեց, որ ինքը կարողանար արդեն ցույց տալ ծիածանը և խոսել այդ մասին։ Նա մտածում էր, թե էլ ինչ ասի, երբ հայրը մոտեցավ։

Ես քեզ ասացի՝ սպասիր, մինչև ես կգամ։ Դու չես լսում։ Լավ չի, անպարտաճանաչ տղա ես։

Հայրը այդ խոսքը հաճախ էր ասում տղային։ «Անպարտաճանաչ տղա ես»— ասում էր և մայրը. երբ տղան չէր լսում նրան, երբ, ասենք, տանը մնալու փոխարեն իջնում էր բակ խաղալու կամ, ասենք, ճաշը ուտում էր առանց հացի։ Բայց ամեն անգամ տղան զգում էր, որ չէր լինում անուղղելի որևէ սխալ, որի համար արժենար չներել, արժենար լինել խիստ։

Տղան բռնեց հոր ձեռքը, ու նրանք գնացին կինո։

Երեք որսորդների ու նապաստակի մասին կինոն շատ հետաքրքիր էր, և հետևյալ օրը տղան անհամբեր սպասում էր դասերի վերջանալուն, որպեսզի գար տուն, իջներ բակ ու պատմեր իր ընկեր Շարային։ Բայց դպրոցում ժամանակը անցնում էր դանդաղ։ Տղան մի դիրքով նստած հոգնում էր. արմունկներով ու կրծքով հենվում էր դրասեղանին, գլուխը թեքում էր մի կողմ, ճմրկրտվում էր։

— Ուղիղ նստիր,— ասում էր դասատուն։

Նա զգաստանում էր, նստում էր ուղիղ։

— Երեխաներ,— ապա ասաց դասատուն,— այսօր մենք կսովորենք այբուբենի առաջին տառը։

Դասատուն գրատախտակին գրեց մի գծիկ։ Տղան սովորել էր այդպիսի գծիկներ գրել, և դա արդեն ձանձրալի թվաց։ Լուսամուտից դուրս արևոտ էր ու հաճելի տաք։ Փողոցով անցնում էին մեքենաներ ու մարդիկ, հեծանիվ նստած անցան երկու տղա, և՛ նրանց վերնաշապիկները, և՛ ծառերի կանաչը, և՛ փողոցի բոլոր գույները վառ էին։ Դիմացի շենքի համարյա բոլոր լուսամուտներում ծաղիկներ ու կանաչ կային։ Տղան հիշեց, որ մայրը իրենց սենյակի լուսամուտում աճեցնում է ծաղիկներ, ուզեց փնտրել իր մոր աճեցրած ծաղիկների նմանը, և դասատուն ասաց.

— Ուշադի՛ր եղիր։

Տղան կուզեր իջնել փողոց՝ միանալ փողոցի ընթացքին, գնալ, ուր կցանկանար, անել, ինչ կցանկանար, բայց զգում էր, որ այդ անհնար է, որ պարտավոր է նստել այստեղ՝ դասարանում, և եթե չլինի ուշադիր, ապա կլինի անուղղելի ինչ-որ բան, և իրեն ոչ ոք չի ների։

Դասատուն գրատախտակին գծած գծիկին միացրեց երկրորդը, հետո՝ երրորդը։

— Երեխաներ, սա «ա» տառն է,— ասաց դասատուն։

«Ա» տառը շատ նման էր իրեն, և տղային թվաց, թե այդ տառը ուրիշ ձևի չէր էլ կարող լինել, պիտի լիներ միայն այդպես և թվաց, թե ինքը վաղուց ճանաչում էր այդ տառը։ Նա իսկույն սովորեց, որ դա «ա» տառն է։ Հետո աշակերտները այդ տառը գրեցին իրենց՝ գրատախտակին և տետրերի մեջ։ Տղան գրեց մի տող «ա» տառ, հետո՝ երկրորդը և ձանձրացավ։ Նա պիտի գրեր դեռևս երեք տող։ Եթե լիներ տանը, տղան կթողներ գրելը, կիջներ բակ, կգտներ իր ընկեր Շարային ու հողաթմբին նըստած՝ նրան կպատմեր երեք որսորդների ու նապաստակի հերիաթը, իսկ մնացած երեք տող «ա» տառը նա կգրեր հետո, երբ տրամադրված կլիներ։ Մայրը գուցե արգելեր, հայրը, եթե լիներ տանը,



digitised by A.R.A.R.@

նույնպես կարգերը բերել բակ, բայց տղան կրկ-ներ, որովհետև դրանով անուղղելի ոչինչ չէր լինի, թեև մայրը կամ հայրը կասեին. «Դա անպարտաճանաչ տղա է»: Սակայն հիմա տղան զգում էր, որ պարտավոր է գրել մինչև վերջ և մնացած երեք տողը, որ եթե երեկ դուրս գնար դասարանից կամ թե չգրեր, ապա այնտեղ իրեն ոչ որ չէր ների:

Կարենը հրեց տղայի արմունկը: Կարենը նստում էր տղայի հետ միևնույն նստարանին: Դասամիջոցին նա նստարանի ուղիղ մեջտեղով մի գիծ էր քաշել և ասել էր տղային. «Սա մեր սահմանն է, որանից այն կողմ անցնելու իրավունք չունես»: Հիմա Կարենը հրեց տղայի արմունկը, և տղան զգաց, որ սահմանը խախտել էր: Նա սահմանից ետ քաշեց արմունկը:

Եվ տղան զգաց, որ իր դասատուի հետ, իր ընկերների հետ և առհասարակ դպրոցում ինքը չէր կարող վարվել, ինչպես սովոր էր տանը, որ այստեղ միշտ պիտի լիներ շրջահայաց, ուշադիր և պարտաճանաչ, որպեսզի թույլ չտար որևէ թերացում, որևէ սխալ, որի համար, նա համոզված էր, իրեն ոչ ոք չէր ների: Նա զգաց հաջորդ երեք տարիները, ջանալով միշտ լինել ուշադիր, չսխալվել, միաժամանակ արմունկով չխախտել սահմանը, որպեսզի ընկերը չհրի արմունկը, տառերից մեկը չեղծվի, և չլինի անուղղելի մի սխալ:

Տանը տղան ուզում էր բակ իջնել, զանգել իր ընկեր Շահային, բայց մայրը ասաց.

— Ճաշիր, հետո դուրս կգնաս:

Ճաշից հետո հայրը ասաց.

— Այսօր գրատայգի կգնանք: Դու կարդալ կիմանաս: Ուզու՞մ ես:

Փողոցում տղան բոլոր ցուցափեղկերի, պատերի ու հայտագրերի վրա շարված տառերի մեջ փնտրում էր «ա» տառը և մտովի կրկնում էր.

— Ա, ա, ա...

Սովորաբար տղան մատը մեկնում էր տառերին և հորը հարցնում էր.

— Սա ի՞նչ է գրված:

Եվ հայրը կարդում էր:

— Տարափ:

Կամ՝

— Ճաշարան:

Կամ՝

— Զովացուցիչ ջրեր:

Այսօր տղան հորը ոչինչ չէր հարցնում: Նա զգում էր, որ այսօր դպրոցում սովորել, ավելի ճիշտ՝ զգացել էր մի նոր բան, բայց թե ինչ՝ նա չէր կարողանում պարզ մտաբերել ու հասկանալ: Հիշում էր միայն «ա» տառը և հիշում էր, որ զգացել էր, թե այդ տառը շատ նման է իրեն՝ «ա» տառին:

Եվ, երբ նրանք արդեն համարյա հասել էին գրատայգի, նա ասաց հորը.

— Այսօր դպրոցում ես սովորեցի «ա» տառը:



## ՄԵՍՐՈՊՅԱՆ ՏԱՌԵՐ

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

Անմար լույսեր եք,
Մեսրոպյան տառեր.
Որքա՜ն հույզեր եք
Իմ սրտում վառել...

Բացվել են ձեզնով
Աչքերը մտքիս,
Վեհ երազներով
Լցվել է հոգիս:

Ձեզնո՛վ եմ զգում
Հմայքը խոսքի.

Բացում գիտության
Դռները ոսկի:

Կարդում հայրենի
Մեղմանուշ երգեր,
Հրաշքներով լի
Հեքիաթներ, գրքեր:

Իսկ երբ ճամբար եմ
Մեկնում քաղաքից,
Ձեզնով նամակ եմ
Գրում մայրիկիս:

Անշեջ հուրեր եք,
Մեսրոպյան տառեր.
Որքա՜ն լույսեր եք
Իմ ճամփին վառել...

digitised by A.R.A.R.@

# ԻՍԿ ԳԻՏԵ՞Ք ՈՐ...

ՊԱՐՈՒՅՐ ՍԵՎԱԿ



ուք արդեն գիտեք, որ Մեսրոպ Մաշտոցն է ստեղծել մեր հայկական գրերը:

Բայց գիտե՞ք, որ նա է գրել նաև մեր մանուկների առաջին դասագիրքը՝ առաջին «Այբբենարանը»:

Դուք գիտեք, իհարկե, թե ինչ բան է «Այբբենարանը»:

Բայց գիտե՞ք, թե ինչու է կոչվում «Այբբենարան»:

Դուք հիմա գրերն արտասանում եք այնպես, ինչպես Ներ-, րանք հնչում են:

Բայց դարեր շարունակ հայ երեխաները ձեզ ծանոթ տառերը ուրիշ ձևով էին սովորում: Նրանք «ա»-ին ասում էին ոչ թե «ա», այլ «այբ», «բ»-ին՝ «բեն», «գ»-ին՝ «գիմ»: Այսպես, անուն ունի մեր լեզվի ամեն մի տառը: Եվ որովհետև մեր առաջին տառը «ա»-«այբ»-ն է, իսկ երկրորդ տառը՝ «բ»-«բեն»-ը, այս պատճառով էլ հայոց լեզվի առաջին դասարանի գիրքը կոչվում է «Այբբենարան», ինչպես որ տառերի շարքն էլ կոչվում է «Այբուբեն», այսինքն՝ «Ա ու Բ»:



եսրոպ Մաշտոցը ոչ միայն հայ գրերի ստեղծողն է, այլև առաջին հայ գրողը: Թե ովքեր են գրողները՝ դուք գիտեք: Բայց դուք, հավանաբար, ձեր տատիկներից լսած և գրքերում էլ կարդացած կլինեք մի խոսք, որ անեծքի նշանակություն ունի: Այդ խոսքն է. «Գրողը քեզ տանի»:

Դուք գիտեք, որ այս անեծքի մեջ հիշվածը այն գրողը չէ, որ ձեզ համար գեղեցիկ ոտանավորներ ու պատմվածքներ է ստեղծում: Անեծքի մեջ հիշված «գրողը» ունի «սատանա»-ի, «դև»-ի, «չարք»-ի իմաստ:

Իսկ գիտե՞ք, թե ինչից և ինչպես է առաջացել այս նմանությունը:

Մեր պապերի պապերը դարեր առաջ ունեին մի կրոն, որ ուներ ոչ թե մեկ, այլ շատ աստվածներ: Նրանցից մեկն էլ Տիրն էր, որ մահվան աստվածն էր: Նա, իբրև թե, իր առջև դրված ուներ մի մեծ տետր, թանաք ու գրիչ: Մեր հեռավոր պապերը հավատում էին, որ մեռնում է այն մարդը, ում անունը Տիրը գրում է իր տետրակի մեջ:

Ահա թե որտեղից է գալիս «գրողը քեզ տանի» («գրողի տարած») անեծքը:



թե Մեսրոպ Մաշտոցն է առաջին հայ գրողը, ուրեմն նա է նաև մեր գրականության հիմնադիրը:

«Գրականություն» բառը համեմատաբար նոր բառ է:

Դուք շատ լավ գիտեք, թե ինչ է «դպրոց»: Իսկ գիտե՞ք, որ «դպրոց»-ը կրճատված բառ է: Նրա լրիվ ձևն է «դպրանոց», այսինքն՝ դպիրների սովորելու տեղը:

Դպիր էին կոչվում գրել-կարդալ իմացող մարդիկ, գրագետները, քարտուղարները, նաև գրողները: Եվ քանի որ «դպիր» նշանակում էր նաև գրող, ապա գրականությունն էլ դարեր շարունակ կոչվում էր «դպրություն»: Վերջին դարերում «դպիր» էին կոչվում արդեն եկեղեցու ցածր պաշտոնյաները, եկեղեցական երգիչները: Եվ որովհետև «դըպիր»-ն այլևս չուներ «գրող»-ի իմաստ՝ հարմար չէր գրականությանը «դպրություն» ասել:



րականությունը կոչվել է նաև «քերթություն», ինչպես որ գրողին ու բանաստեղծին էլ դարեր շարունակ կոչել են «քերթող», իսկ նրանց գրածները՝ «քերթված»:

Այս բառերի իմաստը հասկանալուց առաջ եկեք միասին կրկնենք, որ Մեսրոպ Մաշտոցը ոչ միայն մեր գրերի ստեղծողն էր, մեր առաջին «Այբբենարան»-ի հեղինակը, մեր առաջին գրողը, այլև մեր առաջին քերականն էր, այսինքն՝ քերականության առաջին դասագրքի հեղինակը:

Թե ինչ բան է «քերականություն»՝ դուք լավ գիտեք:

Բայց ինչու՞ է նա կոչվում «քերականություն», և դա կապ ունի՞ «քերել» բայի հետ:

Դուք, երևի, կզարմանաք, եթե իմանաք, որ «քերականու-



digitised by A.R.A.R.@

թյունը» ոչ միայն կապ ունի, այլ հենց առաջացել է «քերել» բայից:

Իսկ դուք գիտե՞ք, որ հին դարերում թուղթ գոյություն չուներ: Մեր հեռավոր պապերը գրում էին ոչ թե թղթի, այլ մագաղաթի վրա: Դուք, հավանաբար, չգիտեք նաև, թե ինչ բան է մագաղաթը: Մագաղաթը հատուկ մշակությամբ պատրաստում էին գառան, ոչխարի, հորթի կաշվից՝ վրան գրելու համար: Բայց մագաղաթն էլ միշտ չի եղել: Մագաղաթից առաջ մարդիկ գրել են հում կամ թրծած աղյուսների վրա, քարերի վրա: Իսկ աղյուսի կամ քարի վրա ոչ թե գրել է պետք, այլ «փորագրել», և գրելու համար պետք է ոչ թե մատիտ կամ գրիչ, այլ մի այնպիսի սուր բան, որով հնարավոր լինի փորագրել աղյուսի կամ քարի վրա:

Իմացեք նաև, որ հին ժամանակներում գրատախտակի դեր էր կատարում հարթեցված մեղրամոմը, ուրեմն ոչ թե կավիճով էին գրում, այլ ինչ-որ սուր մի գործիքով:

Այս բոլորն իմանալուց հետո՝ վերադառնանք «քերել» բային և հիշենք, որ քերել նշանակում է որևէ սուր բանով փոսացնել մեկ ուրիշ բան, քերծել, խազել, փորագրել: Մենք արդեն գիտենք, որ աղյուսի, քարի կամ մեղրամոմի վրա գրելու համար հարկավոր էր հենց քերել, այսինքն՝ քերծել, խազել, փորագրել: Ուրեմն, հին ժամանակներում «քերել» ասելով հասկացվում էր մոտավորապես այն, ինչ մենք հասկանում ենք «գրել» ասելով:

Հիմա հասկացա՞նք, թե ինչու է ճիշտ գրելու (և խոսելու) գիտությունը կոչվում «քերականություն», իսկ քերականություն լավ իմացողը՝ «քերական» կամ «քերականագետ»:



այց «քերել» բայը ունի մեկ ուրիշ ձև էլ, որ քերականության մեջ կոչվում է սաստկական ձև, այսինքն՝ ուժեղացված ձև: «Քերել»-ու ուժեղացված ձևն է «քերթել»-ը: Մենք արդեն գիտենք, որ հին ժամանակներում «քերել» նշանակում էր «գրել», ուրեմն նույնն էր նշանակում նաև «քերթել»-ը: Ահա թե ինչու դարեր շարունակ բանաստեղծությունը, գրական ստեղծագործությունը կոչվել է քերթվածք, բանաստեղծները, գրողները (ինչպես նաև պատմագիրներն ու քերականագետները) կոչվել են քերթող, իսկ գրականությունն ընդհանրապես՝ քերթություն:



սկ դուք գիտե՞ք, որ Մեսրոպ Մաշտոցն ստեղծել է ոչ միայն մեր գրերը, այլև մեր կետադրական նշանները:

Դուք չեք կարող չիմանալ, որ կետադրական այդ նշանների մի մասը կա նաև ուրիշ լեզուների մեջ (օրինակ՝ ստորակետը, միջակետը, վերջակետը, փակագիծը, չակերտը և այլն):

Բայց դուք գիտե՞ք, որ մեր կետադրական նշանների մի մասը ունի միայն մեր լեզուն: Օրինակ՝ ուրիշ ոչ մի լեզվի մեջ հարցական ու բացականչական նշանները չունեն այն ձևը և չեն դրվում այնպես, ինչպես մենք ենք անում: «Բութ» կոչված նշանը նույնպես զուտ հայկական է:



սկ դուք ուշադրություն դարձրե՞լ եք մեր կետադրական նշանների անունների վրա: Եթե մի փոքր մտածեք, իսկույն կհասկանաք, իհարկե, թե ինչու է «միջակետը» կոչվում «միջակետ» (որովհետև դրվում է տողի մեջտեղում), իսկ «ստորակետը»՝ «ստորակետ» (որովհետև դրվում է տողից ներքև, տողի ստորին մասում): Բայց ինչու՞ է «բութը» կոչվում «բութ»: Այդ հասկանալու համար դուք պիտի համեմատեք «շեշտ»-ը «բութ»-ի հետ: «Շեշտ»-ը, ինչպես գիտեք, սկսվում է ուժեղ սեղմումով և գնալով բարակում-սրանում-շեշտվում է (այս պատճառով էլ կոչվում է «շեշտ»): Իսկ «բութ»-ը սկսվում է ուժեղ սեղմումով և ուժեղ սեղմումով էլ վերջանում է՝ ստեղծելով կարծես թե երկու ծայրերից էլ կտրված մի գծիկ, որը սուր «շեշտ»-ի համեմատությամբ իսկապես բութ է:



յս ձևով, մի փոքր մտածելուց հետո, դուք կարող եք հասկանալ մեր կետադրական բոլոր նշանների անունները, բացի թերևս «չակերտ»-ից: Իսկապես ի՞նչ է նշանակում «չակերտ»:

«Այբբենարան» բառի բացատրությունից դուք արդեն գիտեք, որ մեր տառերն ունեն իրենց անունները. «ա»-ն՝ «այբ»,



digitised by A.R.A.R.@

«բ»-ն՝ «բեն», և այլն: Մեր «չ» տառի անունն է «չա»: Իսկ «կերտել» նշանակում է «շինել, սարքել, ստեղծել», ինչպես որ «կերտ» նշանակում է «շինված, սարքված, ստեղծված»: Այսպիսով «չակերտ» նշանակում է «չա»-ի ձևով, այսինքն՝ «չ» տառի ձևով սարքված-ստեղծված:

Եվ իսկապես էլ, եթե ուշադրությամբ նայեք «չակերտ» նշանին, ապա կտեսնեք, որ նա այլ բան չէ, քան մեր «չ» տառը՝ փոքր-ինչ ձևափոխված վիճակում:



# ՕՇԱԿԱՆՈՒՄ

ԼԻԱ ԲԱԼԱԳՅԱՆ

Գյուղի կենտրոնում, իրար կողք-կողքի, վեհությամբ բարձրանում են երկու շինություն: Նրանցից մեկը հնամենի, մոխրագույն եկեղեցին է, ոսկեփայլ գմբեթներով, մթին նեղլիկ պատուհաններով, որոնց շուրջը ծվարել են թարմ կանաչի գնդաձև խրձիկները: Քամու մեղմիկ հպումից սրբածայր խոտիկները դողդողում են, սարսռում, կենդանություն սփռում ծանրանիստ եկեղեցուն:

Ինչե՛ր ասես չի տեսել նա, այդ լռիկ խոկացող հուշարձանը. ցրտաշունչ հողմեր են փչել և անխղճա ծեծել նրա հպարտ ճակատը, ինչքա՜ն արցունք է թափվել նրա՝ ծխից սևացած պատերի վրա, ինչքա՜ն վշտերի է մասնակից եղել, որքա՜ն վառ հույսեր են փշրվել նրա սրբատաշ կամարների տակ, որքա՜ն հարցումներ են անպատասխան մնացել:

Ամպերը կուտակվել են, թանձրացել նրա գլխավերևում, կայծակը թրատել է երկինքը, ամպերի որոտը ականջ է խլացրել... բայց կանգնում է մնացել հայ ժողովրդի աննկուն ոգին՝ գալիք օրվա, ապագայի պայծառ հույսերով լեցուն հավատքի ոգին:

Ու այժմ էլ հպարտ կանգնած է այդ խոկացող շինությունը, իր ծերության մեջ ևս վեհաշուք, որպես ստեղծագործ ժողովրդի անմահ մի հուշարձան:

Նրա անմիջապես կողքին, փոքր-ինչ առաջ, վեր է բարձրանում մեկ ուրիշ շինություն՝ միշտ ուրախ, միշտ ծիծղուն և աղմկածայն, վարդագույն տուֆից կերտված, թրթռուն, ղողանջուն զանգով, կարմիր վզկապ կապած աշակերտների ուրախ ճռվողյունով լեցուն:

Օշականի միջնակարգ դպրոց... իրագործված երազանքների ու իղձերի կենդանի հուշարձան... հարյուր մեկ տարեկան, բայց հավետ պատանի, զվարթ ու խնդերես:

Եվ կանգնած են նրանք, այդ երկու շինությունները, երկարաձիգ տարիների շղթայով բաժանված, սակայն կողք-կողքի, ինչպես պատմության ծավալուն գրքի հին ու նոր թերթիկ, հին ու նոր կյանքի մի-մի հուշարձան...

Վաղ առավոտ է. արևի առաջին ճառագայթների չարաճճի խրձերը թափվել են քնաթաթախ գյուղի վրա, ծիրանեգույն շղարշով փաթաթել բարդիների սրածայր գագաթները: Կարծես մի աներևույթ ձեռք ցախավելով ավլել-սրբել է մանուշակագույն թափանցիկ երկինքը, տեղ-տեղ թողնելով շառագունած ամպի ծվեններ:

Այդ վաղ ժամին ճռնչալով բացվում են եկեղեցու ծանր դռները և ծերուկ զանգերի խուպտ «դի՜ն դո՜ն»-ը անտարբեր ալիքում է լռությունը:

Եկեղեցու մոտ հանկարծ հայտնվում են երկու պատանի՝ ձեռքներին փունջ-փունջ դաշտային ծաղիկներ: Գարնանային չարաճճի քամին խաղում է նրանց կարմիր վզկապների հետ: Պատանիների այտերը շիկնել են արագ քայլելուց, կոկիկ սա-



digitised by A.R.A.R.@

նըրված. թաց մազերը սևորակ փայլով բուրում են թարմությամբ: Արագաքայլ, խորհրդավոր ու լռիկ անցնում են նրանք եկեղեցու միջով, մտնում մըթին խուցը:

«Ի՞նչ է պատահել, ի՞նչ գործ ունեն պիոներները այս վաղ ժամին եկեղեցում»—հավանաբար ինքն իրեն զարմացած հարցկտա այս վայրերին անծանոթ պատահական անցորդը և հետաքրքրությունը բավարարելու համար պիոներների հետևից կմտնի եկեղեցի:

Մթին խուցից նեղ գրանիտե աստիճանները իջնում են մեկ ուրիշ փոքրիկ սրահ, վերևի պատուհանից լուսե մի հաստ շերտ հանդիսավոր ընկնում է գետնին, լուսավորում վարդագույն մարմարե անպաճույճ դամբարանը: Այդտեղ, մարմարիոնի մոտ, ձգված կանգնած են երկու պատանիները, պիոներական պատվի բռնած, սևորակ, փայլփլուն աչքերը խոնարհած գետնին: Որքա՜ն լռություն կա նրանց մատաղ դեմքին, որքա՜ն խորհրդավորություն, հավատք և հպարտություն:

Այնուհետև պատանիները թարմ ծաղիկներ են դնում դամբարանին և լռիկ հեռանում եկեղեցուց:



Հետաքրքրությունը շուտափույթ բավարարելու համար անցորդը անշուշտ կմոտենա շիրմաքարին և կկարդա ոսկետառ մակագրությունը՝ «Սուրբ Մեսրոպ Մաշտոց»:

Խոնարհվի՛ր, ճամփո՛րդ, այդ համեստ դամբարանի առաջ, այդտեղ հանգչում է նա, մեծ ուսուցիչը, որը լույսի ու իմաստության զենքը պարգևեց հայ ժողովրդին, որով մարտնչեց ժողովուրդը կորովով, դիմադրեց ու հաղթեց անցած-գնացած փոթորիկներին:

...Մեսրոպ Մաշտոցի անունը կրող Օշականի դըպրոցի պիոներները իրենց շեֆության տակ են վերցրել Մեծ ուսուցչի դամբարանի խնամքը... Նըրանք ամեն օր բազմերանգ ծաղկեփնջեր են դնում նրա գերեզմանին, որպեսզի միշտ թարմությամբ բուրի նրա մեծ հիշատակը...

* * *

— Տեսնես ի՞նչ գույնի կլինեն վարդերը,— Ազատուհին գուրգուրանքով շոյում էր մեծ-մեծ փշերով վարդենու գորշ կանաչ ցողունը, որը թվում էր անկենդան, միայն ծայրի շիվերն էին փափուկ ու նուրբ: Ռոբերտը բահով փոս էր փորում վարդենին տնկելու համար: Ազատուհին ցանկանում



digitised by A.R.A.R.@

էր, որ իր տնկած վարդենին բոլորից շուտ ծաղկի և որ նրա վրա աճեն խոշոր ու մեծ, ալվանալվան վարդեր:

— Գիտե՞ս, Ռոբերտ, երբ բացվեն վարդերը,— դիմեց նա ընկերոջը.— ես կպոկեմ ու...

Տղան կռացած արևահար ծեռքերով արագ-արագ փոսից դուրս էր հանում ավելորդ հողը: Նա լուռ լսում էր Ազատուհուն: Վերջին խոսքերը հավանաբար դուր չեկան տղային: Նա կնճռոտեց դեմքը և արհամարհական ասաց.

— Դե դուք՝ աղջիկներդ, փչացնելուց բացի ուրիշ ի՞նչ կարող եք անել:

Ազատուհին զայրացած նայեց ընկերոջը, ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց լռեց:

Շուտով նրանք ավարտեցին իրենց գործը, միացան դպրոցի բակում հավաքված պիոներների խմբին: Նրանք ավտոմեքենայի թափքից խճաքար էին բեռնաթափում: Այնտեղ էին Միշան, Սուսաննան, Հարությունը, Անահիտը, Կարինեն և շատ ուրիշներ:

Աշխատում էին բոլորը՝ աշակերտներ, ուսուցիչներ:

Մի այլ տեղ պիոներները բակի երկայնքով դալար բարդիներ էին տնկում, ուրիշները օգնում էին բանվորներին՝ անցման ուղիները սալահատակելու, դպրոցականներից շատերն էլ հարդարում էին բակը, հավասարեցնում:

Բոլորին համակել էր ոգևորությունն ու աշխույժը: Շուտով, շուտով նրանք կավարտեն բակի բարեկարգման աշխատանքները, և Մեսրոպ Մաշտոցի հոբելյանական օրերին գեղեցիկ ու գրավիչ կլինի շրջապատը:

Ազատուհին մեկ անգամ ևս հեռվից նայեց վարդենուն: Փոքրիկ թփերը կանոնավոր շարված էին կողք-կողքի, մի ամբողջ պուրակ էր ստեղծվել:

—Մեկ, երկու, երեք, չորս... չորսն էլ մերն են,— բարալիկ մատը թափահարելով հաշվեց նա և հանկարծ հիշեց, որ մոռացել է ջրել վարդենին: Անմիջապես վերցրեց դույլը և վազեց աղբյուրի մոտ: Ճանապարհին նա հանդիպեց Ռոբերտին, որը մի ուրիշ տղայի հետ պատգարակով հող էր տեղափոխում: Ազատուհին ջրով լի դույլը գետնին դրեց.

— Ես կարմիր վարդերը կպոկեմ և կդնեմ Մեսրոպ Մաշտոցի գերեզմանին,— արագ-արագ ասաց աղջիկը:

Ռոբերտը ցանկացավ ինչ-որ բան ասել, բայց ընկերը արագ առաջ էր գնում:

Ազատուհին թեթևացած շունչ քաշեց և հաղթանակ տարած հայացքով շտապեց դեպի վարդենիների պուրակը:



Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԲՇՏԻԿՅԱՆԻ

* * *

Թրթռում է դպրոցական զանգը: Աշակերտները դուրս են հորդում բակ: Կամաց-կամաց հանդարտվում է դպրոցը: Ու թվում է, ննջում է նա, մեծ երեխայի նման, երեկոյի փափուկ շղարշի ներքո: Բայց ոչ... դպրոցական կյանքը շարունակվում է տանը: Աշակերտներից յուրաքանչյուրին դուք կըտեսնեք հակված գրքերի ու տետրակների վրա՝ ջանասիրաբար պարապելիս:

Իսկ առավոտյան դպրոցը կրկին կլցվի կենսախինդ ձայներով ու կհորդա կյանքը վարար գետի նման՝ միշտ նոր ավյունով, միշտ նոր ու նոր երգերով լեցուն:



digitised by A.R.A.R.@

... Ես ամեն օր հայերեն եմ սովորում ... Դա մի հարուստ լեզու է ...

... Ինչպիսին էլ լինի նրանց ճակատագիրը,— իսկ դա անցյալում դաժան է եղել.— ինչպիսին էլ լինի նա ապագայում, նրանց երկիրը հավետ պիտի մնա, որպես աշխարհի ամենահետաքրքիր երկրներից մեկը:

ԲԱՅՐՈՆ

Եթե նկատի առնենք պատմական այն բացառիկ ծանր իրադրությունը, որի մեջ Մաշտոցը կարողացավ արթնացնել հայ ժողովրդի ազգային գիտակցությունը, և նրա այդ գործը համեմատենք Պիպինոսի և նրա զինակիր Վինֆրիդի գործունեության հետ, որ նրանք արին գերմանական ժողովրդի համար՝ այս վերջինները «խեղճ թզուկներ» կերևան մտքի այդ հսկայի համեմատությամբ:

Հ. ՄԱՐԿՎԱՐՏ

Սակայն հայ ժողովուրդը պահպանեց իր կուլտուրան ու գրականությունը այն օրվանից սկսած, երբ հայ դպրության մեծ հիմնադիր Մեսրոպ Մաշտոցը հնարեց հայկական այբուբենը և իբրև ավանդ թողեց հայոց տառերով գրված առաջին խոսքը. «Ճանաչել զիմաստութիւն և զխրատ և իմանալ զբանս հանճարոյ»:

ՎԼԱԴԻՄԻՐ ԼԻԴԻՆ




ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ

Գործ՝ Ղուկաս Չուբարյանի

digitised by A.R.A.R.@

# ՏԱՌԵՐԻ ՀԱՃԱԽԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԵՐԵՆՈՒՄ

*Ձեզանից յուրաքանչյուրը ամեն օր բաց է անում որևէ գիրք կամ ամսագիր և խորանում նրա բովանդակության մեջ։ Սակայն տարվելով բովանդակությամբ, երևի, շատ քչերն են ուշադրություն դարձրել այն բանի վրա, որ որոշ տառեր ավելի շատ են հանդիպում տեքստում։ Փորձենք կատարել այդ տիպի հաշվումներ։ Պարզության համար վերցնենք տասը հազար տառ պարունակող մի հատված և հաշվենք դրա բոլոր տառերը։ Սակայն չշտապենք. հաշվելուց առաջ եկեք այբուբենի 39 հայտնի տառերին ավելացնենք մի նոր, 40-րդ տառ ևս։ Այդ «տառը»... բառերի միջև եղած դատարկ տեղն է։ Իսկ եթե որևէ մեկը կարծում է, որ այդ նոր «տառը» պակաս կարևոր է, քան մյուս 39 տառերը, ապա թող նա փորձի գրել մի շարադրություն՝ կպցնելով բառերը միմյանց ու հետո առաջարկի իր ընկերոջը կարդալ գրածը։ Համոզված եղեք, որ իսկույն կարժանանաք ձեր ընկերոջ հանդիմանությանը։ Այսպիսով, մեր ընտրած հատվածում բառերի միջև եղած բաց տեղերը պետք է հաշվել որպես տառեր։ Այժմ հաշվենք, թե ո՛ր տառը քանի անգամ է հանդիպում այդ 10000 տառերի մեջ։ Պարզվում է, որ ամենից հաճախ հանդիպում են հենց մեր կողմից մտցված 40-րդ «տառերը»։ 10000 տառից մոտ 1700—1800-ը կլինեն բառերը միմյանցից բաժանող դատարկ տեղերը։*

*Այնուհետև գալիս է «ա» տառը, որը նույն 10000 տառերի մեջ հանդիպում է 1100- 1200 անգամ։ Իսկ «ֆ» տառը հազվադեպ է երևում՝ հազիվ 2—3 անգամ։ Զգուշացնում ենք, որ խոսքը գեղարվեստական գրքերի մասին է, որոշ տեխնիկական գրքերում «ֆ»-ն կարող է ավելի հաճախ հանդիպել։*

*Դուք գիտեք, որ «ր» տառով սկսվում են միայն «րոպե» և «րաբբի» բառերը։ Ոմանք դրանից սխալ եզրակացության են հանգում, կարծելով, թե «ր»-ն քիչ գործածվող տառ է։ Մինչդեռ դա «ա»-ից և «ն»-ից հետո երրորդ տառն է, որ ավելի հաճախ է գործածվում։ Յուրաքանչյուր 10000 տառից մոտավորապես 750-ը կլինի «ր»։*

*Այսպիսով, 100 էջանոց գրքի մոտ 18 էջերը «դատարկ» են՝ դրանք զբաղեցրած են բառերը միմյանցից բաժանող «ազատ տեղերով»։ Նույն 100 էջերից 11—12-ը գրավում է «ա» տառը, մինչդեռ «ֆ»-ն զբաղեցնում է հազիվ կես տող։*

*Հետաքրքիր է նշել, որ եթե միայն «ա» տառի գործածությունը երկու անգամ ավելի քիչ լիներ, ասենք, «ո» կամ «ս» տառերի նման, ապա բոլոր գրքերը «կնիհարեին» մոտ 6 տոկոսով։ Այսինքն՝ 1000 էջանոց գիրքը կունենար 940 էջ։*

*Ուրեմն, եթե մենք հայերենի համար Մորզեի այբուբենի նման պայմանական այբուբեն մշակելու լինեինք, ապա ամենակարճ խորհրդանիշը պիտի հատկացնեինք ամենից հաճախ գործածվող «ա» տառին, իսկ ամենաերկարը թողնեինք «ֆ»-ի համար։ Այսինքն՝ վարվեինք ճիշտ այնպես, ինչպես ժամանակին վարվել է Մորզեն անգլերենի նկատմամբ։*

*Ռ. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ*



**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ**



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 02092, Պատվեր 770, Տպաքանակ՝ 9600։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 30/V 1962 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 20 կ.


digitised by A.R.A.R.@

## ԳՐԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ

1. Շիրվանզադեի այն գործը, որը հետագայում հեղինակը պիես է վերածել: 2. Շեքսպիրի ողբերգություններից: 3. Զոհրապի նովելներից: 4. Ժամանակակից ամերիկյան նշանավոր գրող: 5. Աշխարհահռչակ բանաստեղծ: 6. Ֆրանսիական խոշոր գրող: 7. Հայ գրականության գլուխ-գործոցներից մեկը: 8. Ամերիկահայ գրող: 9. «Հուշարձան» բանաստեղծության հեղինակը: 10. Թումանյանի հեքիաթներից: 11. Աշխարհահռչակ առաջին վեպի հեղինակը: 12. Կոլեկտիվացման թեմայով գրված վեպ:

Հորիզոնական տողերը լրացնելուց հետո, ազդանշային շրջանակներում դուք կկարդաք հայ մեծագույն լուսավորիչի անուն-ազգանունը:

Կազմեց՝ ՎԱՉԵ ԳԱՍՊԱՐՅԱՆ




# ԲԱՌԱԽԱՂ «ՄԱՇՏՈՑ»

Հայոց այբուբենի տառերը (բացառությամբ «և»-ի) հետևյալ քանակությամբ՝ «Ա» տառից 5 հատ, «Է»-ից 2 հատ, «Ի»-ից 3 հատ, «Ու»-ից 4 հատ և մնացած տառերից մեկական հատ գրեցեք հաստ ստվարաթղթի վրա և գծագրի սև շրջանակների չափով կտրեցեք: Կստացվի 48 տառաշրջանակ:



Եթե այդ տառերը սրամտորեն դասավորեք գծագրի կապույտ շրջանակներում, ապա դուք 48 տառով կարող եք կազմել 48 բառ և նույնիսկ ավելի:

Բառեր կարելի է կարդալ գծագրի բոլոր ուղղություններով և անգամ հաջող գըտնըված բառի մասերում, օրինակ՝ ընձուղտ բառում կարելի է կարդալ և՛ ուղտ, և՛ ձու բառերը: Կամ կարող եք կարդալ բառեր, որոնք հակառակ կողմից կարդալիս էլ արտահայտեն իմաստ:

«Մաշտոց» կոչվող այս խաղում կան դժվարություններ, որոնց կհանդիպեք խաղալիս:

Խաղալ կարող եք և՛ մենակ, և՛ երկուսով, և՛ անգամ մի քանի հոգով:

Դե՛հ, երեխանե՛ր, շտապեցեք մրցել ձեր բառապաշարով ու մտքի ճկունությամբ:

Առաջարկը՝

ԿԱՐԼԵՆ

ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

digitised by A.R.A.R.@

